34րդ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ԴԱՒԹԵԱՆ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ

---

# ՆԱԽԱԿՐԹՈՒԹԵԱՆ ԱՄԲՈՂՋ ԴԱՍԸՆԹԱՑՔ

## ՀԱՄԱԿԵԴՐՈՆ ԴՐՈՒԹԵԱՄԲ

---

# ՆՈՐ ԴՊՐՈՑ

*Բարոյագիտութիւն, Քաղաք. Կրթութիւն,*
*Պատմութիւն, Աշխարհագրութիւն, Թուաբանութիւն,*
*Գիտութիւններ, Մայրենի լեզու*

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

## Տարրական Ընթացք

## Ժ. ՊՐԱԿ

---

ԳԻՐՔ ԱՇԱԿԵՐՏԻՆ

معارف نظارت جلیله سنك ۲۴۳ نومرولی و فی ۱۱ تشرین ثانی ۳۱۶
تاریخلو رخصتنامه سیله طبع اولنمشدر

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ
ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ
1902

# ԲԱՐՈՅԱԳԻՏՈՒԹԻՒՆ



## ԱՆՁՆՈՒԻՐՈՒԹԻՒՆ

**1. Խօսակցութիւն. — Եսասէր ըլլալու չէ՛.** — Կը յիշէք հարկաւ Ճպուռին ու Մրջիւնին պատմութիւնը զոր օր մը խօսեցայ ձեզի։ Մրջիւնը մերժեց խեղճ ճպուռը պաշտպանել, որովհետեւ շատ եսասէր էր։ Լաֆոնթէն ուրիշ առակ մ'ալ զրուցած է։ Մուկ մը խոշոր կտոր մը պանիրի մէջ կը մտնէ, կ'ուտէ ու հոն հանգիստ կ'ապրի, կը պարարտանայ։ Իր դրացիները սաստիկ նեղութեան մէջ կ'իյնան, կուգան կ'աղաչեն որ իրենց քիչ մ'ուտելիք տայ։ Ի՞նչ կը պատասխանէ, գիտէ՞ք.

«Ճգնելու համար այս տեղ եմ փախուեր,
Ա՛լ չեմ հոգար ես գործերն աշխարհիս,
Ի՞նչպէս օգնեմ ձեզ, ո՛վ բարեկամներ,
Կ'աղաչեմ՝ գացէք, մի՛ վրդովէք զիս։

Ու գեր մուկը դռնակը կը գոցէ իր դրացիներուն երեսին։ Չէ՛, չեմ յուսար որ ձեզմէ մէկը ուզէ այս Մուկին ու՝ Մրջիւնին նմանիլ, անոնց պէս եսասէր ըլլալ։ Եսասէր մարդը միայն ինքզինքը կը մտածէ, հոգ չ'ըներ ուրիշներուն ցաւերը, վիշտերը։ Գէշ բան է աս, շա՛տ գէշ։

1. **Առած.** — Մարդ որչափ եսասէր չըլլայ, այնչափ ինքզինքը կը շտկէ եւ բարի բաներու կը վարժուի:

2. **Առած.** — Իբրեւ մարդ մեր պարտականութիւնն է ուրիշներն աւելի սիրել քան մեր անձը։

---

**2. Խօսակցութիւն. — Պէտք է ուրիշները իր անձէն աւելի սիրել.** — Եսասիրութենէ ազատելու միակ միջոցը աս է որ ուրիշները մեզմէ աւելի սիրենք։ Ինչո՞ւ համար կենդանիներու մէջ ամենէն ազնիւը, ամենէն օգտակարը

չունի է, կ'ըսենք։ Որովհետեւ չունի իր տէրը կը սիրէ ա՛յնչափ որ, եթէ հարկ ըլլայ, անոր համար կը մեռնի։

Փորձեցէ՛ք ձեր մէկ բարեկամը շատ սիրել, այնպէս որ անոր մէկ վիշտին համար դուք աւելի վշտանաք, անոր ուրախութեան համար աւելի ուրախանաք, ու պիտի տեսնէք թէ ո՛րչափ բարի կ'ըլլայ ձեր սիրտը։ Երբ ձեր գրպանին մէջ քառասուն փարա կայ, ու մտքեր-նիդ դրած էք անով շաքար գնել կամ խաղալիկ, տուէք զայն աղքատիկ տղայի մը, եւ պիտի տեսնէք թէ ո՛րչափ սրտերնիդ կը բացուի։

3. Առած. — Ի՛նչ աղէկ բան որ ձեզի համար կը խորհիս, խորհէ՛ բարեկամիդ համար ալ:

---

**3. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Համակրութիւնը.** — Մտքեր-նիդ դրէք, տղաքներս, որ ընաւ մէկուն վիշտ չպատճառէք, ընդհակառակն՝ վիշտ ունեցողներ փնտռեցէք ու մխիթարեցէք զանոնք։ Երբ սեղան կը նստիք լաւ կերակուրներ ուտելու, խորհեցէք որ դուրսը աղքատ տղաք կան որ չոր հաց անգամ չունին ուտելու։ Երբ ձմեռ կուգայ ու տաք հագուստներ կը հագնիք, մտածեցէ՛ք թէ դուրսը բոպիկ ու կիսամերկ պզտիկներ կան։ Երբ կը փնտռէք այդ խեղճերէն մէկը ու կը մխիթարէք զայն, ըսել է՝ կը համակրիք անոնց։ Այո՛, խեղճերուն, ցաւ ունեցողներուն համակրելու է։

4. Առած. — Ուրիշներու ցաւերուն վրայ խորհելու է։

5. Առած. — Երբ մէկուն կը համակրիս, անոր վիշտը կը թեթեւցնես։

---

**4. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Անձնուէր ըլլալու է իր ընտանիքին.** — Բարիզի մէջ ութ տարեկան աղջիկ մը ոտքերը քաշուած, անդամալոյծ՝ միշտ պատուհանին առջեւ կը

*նստէր ու բան մը չէր կրնար ընել։ Եղաւ որ իր մայրը մեռաւ, հայրն ալ կուրցաւ։ Ի՞նչ ընելու էր խեղճ աղջիկը։ Մտածեց որ հիմա ինքը պէտք է օգնէ իր հօրը։ Անմիջապէս կօշիկի մեծ գործատուն մը կ՚երթայ ու կը խնդրէ որ իրեն գործ տան։ Ամբողջ ցորեկն ու գիշերուան մէկ մասը կ՚աշխատի՝ մուճակ կը կարէ, և օրական մը ձեռք բերելով՝ իր կոյր հայրը կ՚ապրեցնէ։*

*Ուրիշ տղայ մը, Ժորժ անունով, դեռ տասներկեց տարեկան, կը կորսնցնէ իր հայրն ու մայրը։ Տանը մէջ կը մնան իր երեք պզտիկ քոյրերը և մեծ հայրը որ հիւանդ էր, ու տեղէն չէր կրնար շարժիլ։ Ի՞նչ ընէր հիմա Ժորժ։ Խելացի ու քաջասիրտ տղայ էր. — կ՚երթայ գործարանատէրի մը քով ու կ՚աղաչէ որ իրեն գործ տայ։ Ժորժ դպրոցէն ելած էր ու աղէկ բաներ սորված էր գիտութեան վրայ։ Գործարանատէրը կը հաւնի անոր ու քովը կ՚առնէ։ Ժորժ ցորեկը քանի մը ժամ կ՚աշխատէր գործարանին մէջ, յետոյ հրաման կ՚ուզէր գործարանապետէն որ տուն երթայ, հոն աշխատի ու իր քոյրերուն վրայ հսկէ։ Այս կերպով Ժորժ հսկեց, խնամեց, մեծցուց իր պզտիկ քոյրերը, ինչպէս հայր մը մայր մը։ Երբ մեծ հայրը մեռաւ, արդէն չէնք շնորհք տուն տեղ չինած էր Ժորժ։*

6. Առած. — Տղաքներ, եղբ (Աստուած չընէ), որ մը դժբաղդութիւն մը գայ ձեր վրայ, քա՛ջ եղէք, ձեր յոյսը ձեր աշխատութեանը վրայ դրէք։

---

**5. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.. — Անձնուէր բարեկամութիւն. —** *Ասկէ շատ ու շատ տարիներ առաջ, քաղաքի մը մէջ կ՚ապրէին երկու փիլիսոփաներ, Տամոն ու Պիթիաս. երկուքն ալ իրարու բարեկամ՝ իրարու վրայ հոգի կուտային։ Պիթիասի թշնամիները օր մը կ՚երթան քաղա-*

*քին իշխանին կ'իմացնեն, իբր թէ Պիթիաս իր վրայ գէշ բաներ կը խորհի: Իշխանը կը բարկանայ, կը բռնէ Պիթիասը և մահուան կը դատապարտէ: Երբ կուգայ այն օրը որ Պիթիասի գլուխը պիտի կտրեն, իշխանին լուր կը ղրկէ որ իրեն քսանըչորս ժամ հրաման տայ, որ երթայ իր գիւղը, կարգ մը գործեր կարգադրէ ու գայ: Իր Տամոն բարեկամը երաշխաւոր կ'ըլլայ և յանձն կ'առնէ անոր տեղ բանտարկուիլ:*

*Իշխանը հրաման կուտայ Պիթիասի որ կը մեկնի և Տամոն անոր տեղ բանտ կը մտնէ: Քսանըչորս ժամը լրանալու վրայ է, դեռ Պիթիասը չի գար: Այն ատեն Տամոնը կ'առնեն կը տանին՝ գլուխը կտրելու համար: Տամոն շատ ուրախ էր որ իր բարեկամը կ'ազատի: Բայց վերջին վայրկեանին, երբ դահիճը սուրը կը վերցնէ անոր վիզը կտրելու համար, Պիթիասը շնչասպառ կը հասնի ու իր բարեկամին վիզը կը նետուի: Իշխանը այս բանը կը տեսնէ, կը հիանայ անոնց բարեկամական սիրուն վրայ, կը ներէ Պիթիասին, կը կանչէ զանոնք իր քով և կը խնդրէ որ զինքը ալ իրենց բարեկամ ճանչնան:*

7. Առած. — *Անձնուէր մարդը շատ ազնիւ սիրտ մը եւ բարձր հոգի մ'ունի:*

8. Առած. — *Անձնուէր եղողը ուրիշին բարիք ընել կ'աշխատի:*

---

**Զ. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Անձնուէր՝ դէպի մարդկութիւն.**

*Մարդիկ կան, գիտուն մարդիկ, որ գիշեր ցորեկ կ'աշխատին գիւտեր ընելու. այսինքն այնպիսի աղէկ բաներ ընելու որ մարդոց օգուտ մ'ըլլայ, և մարդիկ աւելի հանգիստ ապրին: Ահա այս տեսակ մարդիկ հնարած են շոգենաւը, երկաթուղին, հեռագիրը եւ ելեկտրական լոյսը:*

*Ազնիւ մարդիկ որ գիշեր ցորեկ ուրիշներուն աղէ-*

*կութիւնը կը մոռծեն։ Իրենց համար անուն մը, փառք մը հերիք է, որովհետեւ շատ անգամ այս մարդիկ իրենց կեանքը կուտան, թշուառ կ'ապրին՝ գիտութեան և մարդկութեան սիրուն համար։ Անոնք են որ մեծ մեծ հիւանդութեանց դեղ ու դարման կը փնտռեն, աշխարհի ամէն կողմը կը պտտին, հիւանդներու մէջ կ'անցընեն իրենց կեանքը, որ օր մը աղէկ դեղ մը գտնեն։*

**Թ. Առած.** — *Ով որ մարդկութիւնը չի սիրեր, անիկա մարդ չէ՝ անասուն է։*

---

**Ժ. Խօսակցութիւն. — Անձնուրացութիւնը ուրախ կ'ընէ մարդը.** — *Միլիոնատէր մարդ մ'ունէր մէկ հատիկ զաւակ մը որ մեծցած՝ երիտասարդ եղած էր, բայց ո՛չ արհեստ սորված էր, ո՛չ գիտութիւն, և սատիկ կը նեղուէր պարապ օրեր անցընելով։ Մայրը կը տեսնէ որ իր տղան օր օրի կը նիհարնայ, կը տկարանայ, միշտ տրտում, միշտ ձանձրացող։ Ո՛չ գեղեցիկ պարտէզները, ո՛չ ընտիր ձիերը, ո՛չ սքանչելի կերակուրները անոր սիրտը չեն ուրախացներ։ Մայրը կը յուսահատի, վերջապէս օր մ'ալ կ'ելլէ կախարդ կնոջ մը քով կ'երթայ և իր տղուն վիճակը պատմելով՝ դեղ մը կը խնդրէ անկից։ Կախարդ կինը քիչ մը խորհելէ յետոյ կը պատասխանէ. — «Մէկ դեղ մը կայ ձեր տղուն համար։ Իրեն սատակ տուէք, թանկագին բաներ տուէք՝ մատնի, ոսկի շղթայ, ժամացոյց, հագուստ՝ և ստիպեցէք որ երթայ աղքատներ գտնէ և անոնց տայ։»*

*Մայրը կը վերադառնայ և անոր ըսածին պէս կ'ընէ։ Տղան երբ աղքատներուն հետ յարաբերութեան մէջ կը մտնէ, կամաց կամաց թշուառութիւնը կը ճանչնայ, և ամէն անգամ որ բարիք մը կ'ընէ, սիրտը ուրախ կ'ըլլայ։ Այն ատեն կը սկսի սիրել կեանքը և միշտ կ'աշխատի ուրիշներուն նուիրել իր անձը։ Փրկուած էր միլիոնատէրին տղան, ան հիմա հասկցաւ թէ ուրիշներուն բարիք ընելով միայն երջանիկ կրնայ ըլլալ։*

9. Առած. — *Որչափ ալ պզտիկ ըլլաք, եթէ ձեր ներքին զոհողութեան՝ անձնուրացութեան զգացում կայ, դուք մեծ էք:*

10. Առած. — *Առաքինութիւնը ինքնին կը վարձատրէ մարդը, որովհետեւ կ'ուրախացնէ, կը մխիթարէ մարդուն սիրտը:*

---

**8. Խօսակցութիւն. — Ամբողջ բարոյականը անձնուրացութեան մէջ է.** — *Տղաքներս, երբ օր մը մեծնաք երիտասարդ ըլլաք, քանի մը գլխաւոր պարտականութիւններ ձեզ պիտի շրջապատեն. օգտակար պիտի ըլլաք ձեր ծնողքին ու ձեր նմաններուն: Պիտի աշխատիք որ ձեր հայրն ու մայրը աղէկ ապրեցնէք, եթէ անոնք ձեզի կարօտ են. իսկ եթէ ձեզի կարօտ չեն, ազնիւ մարդ պիտի ըլլաք որ անոնց սիրտը ուրախ ըլլայ: Պիտի աշխատիք ձեր գիւղին կամ քաղաքին համար: Հոգ պիտի տանիք ձեր թաղի դպրոցին, ձեր գիւղի եկեղեցիին, արհեստներուն, աղքատներուն:*

*Ինքզինքը մոռնալ, ուրիշներուն նուիրել՝ բարոյականի ամենէն մեծ աստիճանն է: Ուրիշներուն՝ ծանօթներու թէ անծանօթներու՝ օգնել, նեղութեան մէջ եղողին բարիք ընելը ամբողջ մարդկութիւնը սիրելու նշան է: «Սէրը մաքուր սրտերու մէջ կը հանգչի, ինչպէս ցօղի կաթիլը ծաղիկի մը բաժակին մէջ:»*

*Բարոյականի այս դասերուն պսակն է Աւետարանին սա խօսքը. — «Սիրեցէք զմիմեանս»:*

## ԱՄՓՈՓՈՒՄ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԱՄՍՈՒԱՆ

*Մինակ ու մինակ մեր անձին, մեր հանգստութեանը վրայ խորհելու չենք. անձնասիրութիւնը գէշ բան է. և անկէ ազատելու մէկ միջոց կայ. ուրիշը մեզմէ աւելի սիրել: Ջանանք որ բնաւ մէկու մը վիշտ չպատճառենք, ընդհակառակ, միջոցներ փնտռելու ենք ուրիշները մխիթարելու: Մեր ընտանիքը սիրենք, անոնց համար ընենք ամէն զոհողութիւն: Ասիկա մեր պարտքն է արդէն. բայց աւելի ազնիւ բան մը ըրած կ'ըլլանք, երբ օգնութեան հասնինք այնպիսի մարդոց, զորոնք չենք ճանչնար, որոնք մեր կրօնքէն չեն, մեր ազգէն ալ չեն: Ամբողջ մարդկութիւնը սիրելու ենք:*

# ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԻՒՆ



## ԴԱՍ. 1. — ԴՊՐՈՑԻ ԿԵԱՆՔԸ

**1.** *Մենք ամէնքս ալ, մանչ թէ աղջիկ, մեր պզտիկ հասակին մէջ երջանիկ ենք որ կրնանք դպրոց յաճախել, ուսում սորվիլ:*

*Հոս, դպրոցին մէջ է որ պիտի սորվինք թէ աշխատութիւնը օգտակար բան է: Ան որ չ'աշխատիր, ապրելու արժանի չէ:* (*)

*Աշխատութիւնով ո՛չ միայն ապրուստ ճարել կարելի է, այլ նաեւ անով գոհ և ուրախ կ'ըլլայ մարդ:*

**2.** *Բայց մեր աշխատութիւնը այն ատեն արդիւնաւոր կ'ըլլայ, երբ ուշով աշխատինք, կանոնաւոր ու յարատեւ աշխատինք:*

*Պէտք չէ որ ժամանակէն առաջ դպրոցէն ելլենք, այլ գո՛նէ նախնական ուսումը աւարտելով՝ շրջանաւարտի վկայագիր առնենք:*

**3.** *Պզտիկ տղայ մը՝ երբ 4—5 տարեկան է, Մանկապարտէզ կը մտնէ: Երբ 7—9 տարեկան ըլլայ, Մանկապարտէզը աւարտելով՝ կը մտնէ Նախակրթարան: Վեց տարի ալ Նախակրթարանի մէջ ուսնելով՝ կ'ըլլայ շրջանաւարտ:*

**4.** *Անկէ ետքը, եթէ իր հայրը ուզէ, տղայ մը կը մտնէ Միջնակարգ Վարժարան և հոն աւելի շատ ուսումներ կը սորվի: Իսկ եթէ հայրը ուզէ, իր տղան արհեստի կը դնէ:*

---

**1.** Ի՞նչ բաներ կը սորվինք դպրոցին մէջ: Ի՞նչ կ'ըլլայ մարդս

---

(*) *Ապրիլն անհրաժեշտ չէ, թիավարելն անհրաժեշտ է կ'ըսէ Անգլիական առած մը:*

աշխատութեան շնորհիւ : — 2. Ի՞նչպէս աշխատելու ենք : Ե՞րբ ելլելու ենք դպրոցէն : — 3. Ըսէք թէ պզտիկ տղայ մը առաջ ո՞ր դպրոց կը մտնէ : Իսկ Մանկապարտէզէն ե՞տքը : — Ո՞րչափ պէտք է մնայ Նախակրթարանին մէջ : — 4. Նախակրթարանն աւարտելէ ետքը, ի՞նչ կ'ընէ տղայ մը :



## 2. ԴԱՍ. — ԱՐՀԵՍՏԱՒՈՐԻ ԿԵԱՆՔԸ

**5.** *Ամէն արհեստ լաւ է ։ Պէտք չէ գէշ աչքով նայիլ այս կամ այն արհեստին ։ Ամէն գործ իր դժուարութիւններն ունի ։ Երկրագործը՝ իրաւ է որ՝ կոշտ ու տաժանելի աշխատութիւն մը ընելու պարտաւոր է . բայց իր յոգնութիւնները եթէ չըլլան, ի՜նչպէս պիտի ստանայ ցորենը որով ինք ու իր ընտանիքը կ'ապրին, աւելցածն ալ կը ծախէ և անով իր ուրիշ պէտքերը կը հոգայ ։*

**6.** *Այսպէս նաեւ հիւսնը, դարբինը, որմնադիրը, խաղախորդը, ոստայնանկը, նաւավարը, ձկնորսը, ջըրկիրը, ջրհանկիրը, պայտառը, լպուտը, բրուտը ։ Այս ամէն արհեստաւորներն ալ մարդուս համար պէտք են և ամէնքն ալ իրենց արհեստին մէջ դժուարութիւններ կը կրեն ։ Ի՞նչ ընենք, ապրելու համար պէտք է աշխատիլ ։ Ա՛յս է Աստուծոյ պատուէրը ։* (*)

**7.** *Ի՞նչ հաճոյք է արհեստաւորին համար, առտուն կանուխ՝ իր գործին վազել, ուրախ զուարթ աշխատիլ, քրտինք թափել, ցուրտին ու տաքին՝ յոգնութեան ու նեղութեան տոկալ ։*

*Աշխատութեան մէ՛ջ է անոր հացը, ապրուստը, ուրախութիւնը, ուժը, իր և իրեններուն հանգիստն ու երջանկութիւնը ։ Սիրե՛նք արհեստները, ձեռարուեստները, երկրագործութիւնը ։*

(*) «Քրտամբ երեսաց քոց կերիցես զհաց» կ'ըսէ Ս. Գիրքը։
Առած. — Որ ոչն գործէ, կերիցէ մի։

**8**. *Արհեստաւորներն ալ պէտք է գոնէ նախակրթարանէ շրջանաւարտ ըլլան, կարդալ գրել, հաշուել գիտնան, եթէ ոչ՝ չեն յաջողիր, ետ կը մնան։*

---

**5**. Ո՞ր արհեստները լաւ են: Ի՞նչ դժուարութիւններ կը կրէ երկրագործը: Ի՞նչ կ'ըլլայ իր աշխատութեան արդիւնքը: — **6**. Ըսէ՛ք, ուրիշ ի՞նչ արհեստներ կան, եւ նոյն արհեստաւորները ի՞նչ տեսակ նեղութիւններով կը յաջողին իրենց ապրուստը ճարել: — **7**. Աշխատութիւնը հաճոյք կրնա՞յ պատճառել, ի՞նչպէս եւ ինչո՞ւ: — **8**. Արհեստաւորներն ալ դպրոցէ շրջանաւարտ ըլլալո՞ւ են:

## 3. ԴԱՍ. — ԴՊՐՈՑԷՆ ՎԵՐՋԸ

**9**. *Դպրոցէն, վերջը՝ մեր յարմարութեան ու ընդունակութեան համեմատ գործ մը, արհեստ մը պիտի սորվինք։*

*Նախ աշկերտ (չըրախ) պիտի ըլլանք։ Մեզմէ մէկը՝ խանութպանի քով, ուրիշ մը՝ կօշկակարի քով, երրորդ մը՝ ներկարարի, տպագրիչի, գծագրիչի, նկարիչի, ոսկերիչի, ժամագործի, դերձակի, վաճառականի, նպարավաճառի, կահագործի կամ ուրիշ արհեստաւորի քով աշկերտութիւն պիտի ընէ։*

**10**. *Սկիզբները՝ անփորձ է, բան չի գիտեր։ Բայց ուշադրութիւն կ'ընէ, արհեստին կը վարժեցնէ իր ձեռքը, վարպետին ըրածին կը հետեւի, և քիչ քիչ կը սորվի ինք ալ անոր պէս բանիլ և գործ հանել։ Ուշիմ տըղայ մը շուտ արհեստ կը սորվի և օր մ'ալ կը յաջողի վարպետ ըլլալ՝ իր կարգին։*

**11**. *Աշկերտութեան շրջանին մէջ ալ պէտք է որ ազնիւ, բարի, պարկեշտ և ուղղամիտ ըլլանք, պէտք է յարգենք մեր վարպետը, անոր հաւատարիմ ըլլանք։ Անոր պատուէրները անտրտունջ կատարենք, մեզի վստահած գոյքերը, գործիքները խնամքով գործածենք։*

*Անոր վրայ գէշ չխօսինք, իր խանութին կամ տունին մէջ պատահածները ուրիշին չըսենք, և առանց իր հաւանութեան, առանց մեր մեծերուն գիտութեան, առանց զօրաւոր պատճառի, որոշեալ ժամանակէն առաջ մեր վարպետին քովէն չելլենք՝ ուրիշ գործի մէջ քանի մը ղրուշ աւելի շահելու համար։ Ասիկա կը նշանակէ ապերախտ ըլլալ՝ իր վարպետին հանդէպ։ Ջանա՛նք օր օրի աւելի առաջ երթալ մեր արհեստին մէջ, փորձառու և ճարտար ըլլալ՝ և արժանի ըլլալ աւելի վարձք ստանալու։*

**12**. *Վարպետներն ալ իրենց աշկերտը իբրև զաւակ հոգալու են. անոնց վարմունքին հսկելու են, չափազանց աշխատցնելու չեն, և արհեստը սորվեցնելու են։*

**13**. *Իսկ պզտիկ աղջիկները, դպրոցէն ելլելէ ետքը, իրենց մօրը ձեռքին տակ վարժուելու են տունի գործեր կատարելու. ձեռագործ, կար, ձև սորվելու են։ Արդուկ ու լուացք ընել, կերակուր եփել սորվելու են։ Տան մաքրութեան և անձնական մաքրութեան ալ բծախնդիր ըլլալու են, իրենց քոյրերուն ու եղբայրներուն կարկըտուքը ընելու են, զանոնք խնամելու են. եթէ հարկը պահանջէ, պէտք է ձեռարուեստական գործի մը հետեւին՝ ստակ շահելու և իրենց ծնողքին օգնելու համար։ Արդուզարդի, աւելորդ ծախքերու և թեթև զուարճութեանց ու պչրանքի հետամուտ ըլլալու չեն. աշխատելու են որ տունը սիրելի ու հաճելի ընեն իրենց հօրն ու մօրը, իրենց եղբայրներուն ու քոյրերուն. և անոնց հետ անկեղծ ու տաք սրտով վարուելու են։*

*Ժիր ու անձնուէր աղջիկ մը տան ճրագն է։*

---

**9**. Դպրոցէն ելլելէ վերջը ի՞նչ պիտի ընենք: Ի՞նչ արհեստի մտնելու է տղայ մը: — **10**. Ի՛նչպէս պիտի կրնայ սորվիլ արհեստը։

— **11**. Աշկերտ մը ի՞նչպէս վարուելու է իր վարպետին նկատմամբ: — **12**. Իսկ վարպետնե՞րը : — **13**. Ըսէ՛ք թէ ի՞նչ են աղջկան մը գլխաւոր պարտականութիւնները : Ի՞նչ ընելու են՝ իրենց տունը հաճելի ընելու համար :

---

## 4. ԴԱՍ. — ԿԱՐԵՒՈՐ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

**14**. *Առաջները աշխատութիւնը յարգ չունէր: Այսօր ամէն մարդ կը պատուէ աշխատութիւնն ու աշխատաւորը:*

*Արհեստաւոր, գործաւոր ըլլալը ամօթ չէ: Ձեռքի աշխատանքը ստորին՝ անարգ գործ մը չէ, քանի որ պատուաւոր կերպով ապրուստ շահելու միջոց մ'է:*

**15**. *Բայց անարգ ու արհամարհելի չեն մտքի աշխատութիւններն ալ: Բժիշկ, փաստաբան, ուսուցիչ, դատաւոր, խմբագիր, երկրաչափ, ճարտարապետ, հաշուակալ, գրագիր՝ ասոնք ալ մտքի աշխատաւոր են, ասոնք ալ նախ և առաջ համբակ կամ աշկերտ եղած են իրենց արուեստին մէջ, ու այսօր ալ իրենց աշխատութիւնը արհեստաւորի մը, գործաւորի մը աշխատութենէն աւելի ծանր է: Անոնք մտքով կ'աշխատին, երբեմն սաստիկ տքնութեամբ: Իսկ գործաւորը, արհեստաւորը, մշակը, երկրագործը կ'աշխատին մարմնով, շատ անգամ ազատ ու մաքուր օդի, բաց դաշտի մէջ. — ինչ որ իրենց առողջութեան կը նպաստէ:*

**16**. *Ինչ որ ալ ըլլայ մարդուս ընկերական վիճակը, արհեստաւոր ըլլայ թէ մեքենագործ, վաճառական ըլլայ թէ նաւաստի կամ փողոցները մաքրող, աւելածու (չքօփճիւ), իրմէ պահանջուած առաջին առաքինութիւնն է պարկեշտութիւն:*

**17**. *Աշխատելու ենք մեր արհեստին մէջ նոր բա-*

*ներ սորվելու, չարունակ օգտակար գիրքեր ու լրագիրներ կարդալու ենք՝ ասով աւելի յաջողակ կ'ըլլանք։*

**18.** Խրատներ. — *Մեր բոլոր ուշովը, բոլոր ուժովը պէտք է հետեւինք մեր գործին, ժիր ըլլանք։ Խնայող ու կանոնաւոր ապրինք։ Ջեղխ ու շատակեր չըլլանք, անօգուտ տեղը փարա չծախսենք։ Շատ չխօսինք, սուտ չխօսինք։ Կանոնաւոր, ճշդապահ ու խոստմնապահ ըլլանք։ Հպարտութենէ, ցուցամոլութենէ զգուշանանք։ Մեր գործերուն մենք անձամբ հսկենք։ Ամէն բանի մասնաւոր տեղ մը յատկացնելով՝ ամէն բան իր որոշ տեղը դնենք։ Միեւնոյն ատեն շատ բաներու չձեռնարկենք։ Յարատեւութեամբ աշխատինք, և գործ մը կիսկատար չթողունք։ Մեր արհեստին ու զբաղումին վերաբերեալ գործիքները, քանի հիննան կամ աւրուին, իսկոյն նորոգենք։ Ընելիք գործերնիս նշանակենք մասնաւոր տետրակի մը մէջ։ Այսօրուան գործը վաղուան չձգենք։ Առածնիս տուածնիս, շահածնիս ու ծախսածնիս ճիշտ և անմիջապէս գրենք։ Անպէտ բաներ չգնենք, պարտք չընենք։ Ժամանակին յարգը գիտնանք. ժամանակը մեր ամենամեծ դրամագլուխն է։*

---

**14.** Առաջները ի՞նչ աչքով կը նայուէր աշխատաւորը։ Ի՞նչ արհեստներ մարդու յարգ ու պատիւ կը բերեն, եւ ի՞նչ գործեր ամօթալի ու անարգ են։ — **15.** Որո՞նք են մտքի աշխատաւորները։ Ի՞նչպէս է անոնց կեանքը։ Ձեռական աշխատութիւն կատարողներն ի՞նչ տարբերութիւն ունին անոնցմէ։ — **16.** Ի՞նչ պէտք է ըլլայ մեր առաջին առաքինութիւնը։ — **17.** Ուրիշ ի՞նչ յատկութիւններ ունենալ վարժուելու ենք մեր պզտիկ հասակէն։ — **18.** Ի՞նչ խրատներ միտքերնիս պահելու ենք՝ կեանքի մէջ յաջողելու համար։

# ՀԱՅ-ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Ա. — ՀԱՅԵՐԸ ԺԵ.—ԺԸ. ԴԱՐԵՐՈՒՆ: — ԳԱՂՈՒԹՆԵՐ

**1. Գաղթականութիւն.** — *Այլեւայլ պարագաներու բերումով, Հայերը 1385ին սկսան հեռանալ բնագաւառէն՝ այլեւայլ կողմեր գաղթել: Գլխաւորապէս դէպի Արեւմուտք և դէպի Արեւելք:*

*Արեւմտեան գաղթականները ԺԱ. Դարուն եղան Անեցիները որոնք գացին նախ Խրիմ (Ռուսիա), ետքը Լեհաստան, Մոլտաւիա, Վալաքիա, Պուքովինա և մինչեւ Թրանսիլվանիա:*

**2. Լեհաստանի Հայերը՝ Հռովմէադաւան.** — *Առաջին անգամ Լեհաստանի կողմը Հայեր գացին ԺԱ. Դարուն* (1060), *և երկրորդ անգամ ալ* 1500*ին: Աս գաղութին կղերն ու ժողովուրդը մինչեւ ԺԷ. Դար մայրենի եկեղեցիէն չէին բաժնուած: Լէոպոլսի (Լիմպերկի) Արքեպիսկոպոսները* 1365*էն ի վեր, իբրեւ Էջմիածնի Կաթողիկոսներու փոխանորդ, չէ թէ միայն Լեհաստանի, այլ նաեւ Մոլտաւիոյ ու Վալաքիոյ Հայոց վրայ Մետրոպոլիտական իշխանութիւն ունէին:*

*Լեհաստանի Հայերը Հռոմէական եկեղեցիին յարեցան ԺԸ. դարուն մէջերը: Նոյն դարուն սկիզբը Մելքիսեդեկ, Էջմիածնի Կաթողիկոսը, որ Հռոմէական եկեղեցիին յարած էր, Պարսիկ Թագաւորին պէտք եղած հարկը չկրնալով վճարել՝ Եւրոպա փախաւ ու* 1625*ին Լէոպոլսոյ թեմը կառավարեց: Նիկողոս անունով Եպիսկոպոսը յաջողեցաւ Լեհերուն Սիկիսմունտ Թագաւորին աչքը մտնել ու ինքզինքը Լէոպոլսոյ Արքեպիսկոպոս ընտրել տալ* 1629*ին: Նիկողոս, որ Հռոմէական եղած էր, ժողովուրդն ալ իրեն հետեւիլ ստիպեց:*

Լեհաստանի Հայերը Հռոմի եկեղեցիին յարելէն ետք, Մոլտաւիոյ ու Վալաքիոյ Հայերը Լէոպոլսի Արքեպիսկոպոսի իրաւասութենէն բաժնուեցան ու Էջմիածնի Կաթողիկոսութեան հետ միացած մնացին։ Երբոր 1795ին Լեհաստան երկրորդ անգամ բաժնուեցաւ, Լէոպոլսոյ Հռոմէական Եպիսկոպոսները, թէ՛ տեղւոյն հեռաւորութեան և թէ՛ ուրիշ արգելքներու պատճառաւ, Ռուսական Լեհաստանի Հայերուն վրայ իրաւասութիւն չկրնալով ունենալ՝ իրենց իշխանութիւնը լոկ Կալիչիոյ Հայոց վրայ ամփոփուեցաւ։

Հիմա՝ Հայ-հռոմէական կը գտնուի Լէոպոլիս (Լիմպէրկ), Պժեժան, Լըչէց, Ստանիսլաւ, Գուդի, Դիամինից, Հուսեանքա, Սինեատէն և ուրիշ քաղաքներ։

**3. Ստեփաննոս Լեհացի ու Ստեփաննոս Ռոշքեան.** — Լեհաստանի Լիմպէրկ քաղաքին մէջ բնակող նշանաւոր ցեղէ էր Ստեփաննոս Լեհացի որ Փիլիպպոս Կաթողիկոսին քով ղրկուեցաւ Հայերէն սորվելու համար։ Բազմաթիւ գրքեր թարգմանած է։ Մեռաւ 1681ին ու թաղուեցաւ Էջմիածին, Հռիփսիմեանց տաճարը։

Լեհաստանի գաղթականութեան մէջ նշանաւոր էր նաև Ստեփաննոս Ռոշքեան Կամինիցացի՝ որ հոն կառուցած եկեղեցիին աւագերէցն էր։ Թողած է ընդարձակ Բառարան մը Հայ-Լատիներէն։

---

**1.** Ե՞րբ սկսան Հայերը գաղթել եւ ո՞ր կողմեր գացին: — **2.** Լեհացի Հայերը ի՞նչ պարագաներու մէջ եւ ո՞ր թուականին Հռովմէական եղան: — **3.** Ո՞վ էր Ստեփաննոս Լեհացին եւ ի՞նչ բրած է: Իսկ Ստեփաննոս Ռոշքեա՞ն:

## 2. ԴԱՍ. — ԳԱՂՈՒԹՆԵՐ (Շար.)

**4. Մոլտաւիոյ ու Վալաքիոյ Հայերը.** — Մոլտավիոյ ու Վալաքիոյ Հայերը մասամբ մը Արեւելեան Հայերէն

ու մասամբ մը Խրիմի Հայ գաղթականութիւններէն եկած են։ Ասոնց մէկ մասը 1668ին Թրանսիլվանիա անցաւ։ Այս Հայերը 1791էն ի վեր Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքական իշխանութեան տակ են. Հոգեւոր հովիւ մը կ'այցելէ ու հոգ կը տանի Վալաքիոյ ու Մոլտաւիոյ (Ռումանիա) Հայոց հոգեւոր ու կրթական պէտքերուն։

Ռումանիոյ Հայերը կը բնակին Պուքրէշ, Ֆոքշան, Եաշ, Ռոման, Հոգնա, Պօտուշան ու Կալաց։

**5. Թրանսիլվանիոյ ու Հունգարիոյ Հայերը.** —1668ին Մոլտաւիոյ Հայերէն շատերը Թրանսիլվանիոյ լեռներն ապաւինեցան։ Հոն քանի մը տարի իրենց երկիրը դառնալու յուսով պարապ տեղը սպասելէն ետք, նոյն ատենուան Թրանսիլվանիոյ Միքայէլ Ա. Աբաֆի իշխանին դիմեցին և հոն բնակելու հրաման խնդրեցին։ Իշխանը թոյլատրեց։ Քիչ ատենէն Թրանսիլվանիոյ իշխաններէն ու Աւստրիոյ կայսրերէն զանազան արտօնութիւններ ստացան և Լէոբոլտ կայսեր հրամանաւ Կերլա քաղաքը շինեցին ու Եղիսաբեթուպոլիս (Պաշպալով) քաղաքը գնեցին բնակութեան համար։ Երկու քաղաքն ալ զարդարեցին եկեղեցիներով։

Օքսենտիոս Վերզիրէսքի՝ Թրանսիլվանիոյ Հայոց Եպիսկոպոսին փոխանորդ դրուելով՝ յաջողեցաւ 1691ին Թրանսավլիլանիոյ Հայերը Հռոմէական դարձնել։ Օքսենտիոսի մահուընէ ետք, Թրանսիլվանիոյ Հայերն այն տեղի Լատին Եպիսկոպոսին իշխանութեան տակ մնացին։ Բայց իրենց ազգային, «Հայածէս» քահանաներն ունէին։ Թրանսիլվանիոյ Հայերը թէ՛ ազգային նկարագիր և թէ՛ լեզուն պահելու միակ միջոցն եղող ազգ. Եպիսկոպոս մը չունին։ Այժմ կը բնակին Կիրլա, Եղիսաբեթուպոլիս, Ծուրճովա, Սեբլիչ ու Նայսաց։

**6. Պուգովինայի Հայերը.** — 1776ին Պուգովինա

*դաւառը Աւստրիոյ ձեռքն անցնելով Յովսէփ Բ. Կայսրը աշխատեցաւ Մոլտաւիայէն եկած Հայերը Թրանսիլվանիոյ Հայոց պէս Հռոմէական ընել, բայց չյաջողեցաւ։ Ստեփաննոս Լիմպէրկին Հայ-հռոմէական Արքեպիսկոպոսի օրով Պուքովինիայի Հայերը Կաթոլիկ դարձան։*

---

**4.** Ի՞նչ գիտէք Մոլտաւիայի եւ Վալաքիայի Հայերուն վրայ: Ո՞վ կը հովուէ զիրենք հոգեւորապէս: Ռումանիոյ ո՞ր քաղաքները Հայեր կը բնակին: — **5.** Ուսկի՞ց գաղթած են Թրանսիլվանիայի եւ Հունգարիայի Հայերը եւ ե՞րբ։ Միքայէլ իշխանը ի՞նչ թոյլտուեց անոնց: Ուրիշ ի՞նչ արտօնութիւններ ունեցան։ Թրանսիլվանիայի Հայերը ե՞րբ եւ որո՞ւ ձեռքով սկսեցան Հռոմէական դառնալ: Թրանսիլվանիայի ո՞ր քաղաքները Հայ կայ: — **6.** Ո՞ւր է Պուքովինա: Այն տեղի Հայերը ե՞րբ Կաթոլիկ եղան:



3. ԴԱՍ. — ԳԱՂՈՒԹՆԵՐ (*Շար.*)

**7. Խրիմի ու Ռուսիոյ Հայերը.** — *Խրիմի Քէֆէ քաղաքէն Հայերը* 1475*ին Մոլտաւիա ու Լեհաստան անցան։ Խրիմ մնացող սակաւաթիւ Հայեր* 1780*ին, Ռուսերու Կատարինէ կայսրուհիին հրաւէրով, Ռուսաստան գացին և Տօն գետին քովերը Նոր Նախիջեւան ու Եկատերինոսլաւ քաղաքները շինեցին։ Եկատերինոսլաւի Հայ-հռոմէականները* 1790*ին նորէն Խրիմ դարձան, Խարասու-Բազար և Խրիմի քանի մ'ուրիշ քաղաքները բնակեցան։*

*Ռուսերը, ի սկզբան, Հայերուն նկատմամբ մեծ խոհեմութեամբ ու թոյլտուութեամբ վարուեցան։* 1836*ին կայսերական հրովարտակով Հայ եկեղեցին տէրութենէ ճանչցուած եկեղեցի հրատարակուեցաւ. սակայն միշտ Ռուս դաւանանքին ամէն արտօնութիւնները չունի, եւ եկեղեցական կառավարութիւնն ալ մասնակա-*

*վարութիւնը օրէնքով (*) սահմանաւորած է։ Երկրորդ հրովարտակով մը, 1842ին, Կաթողիկոսին կանոնական ընտրութեան թոյլտուութիւն տրուեցաւ, և ընտրութեան իրաւունքը միայն Էջմիածին գումարուած եկեղեցական ու աշխարհական խառն ժողովին վերապահուեցաւ։ 1843էն ի վեր Պարսկաստանի ու Տաճկաստանի Հայերն ալ այս ժողովին երեսփոխան կը ղրկեն՝ Կաթողիկոս ընտրելու համար։ Ընտրութենէ ետք, Ռուսիոյ կայսրը կը հաստատէ Կաթողիկոսը, եթէ ուզէ։*

---

**7. Խրիմի Հայերը ո՞ր քաղաքէն Մոլտավիա գաղթեցին եւ ե՞րբ։ Իսկ Խրիմ մնացողները յետոյ ի՞նչ եղան։ Ռուսիոյ Հայերը ի՞նչ արտօնութիւններ ձեռք բերին 1836ին եւ 1842ին։ Էջմիածնի Կաթողիկոսները ի՞նչպէս եւ որո՞նց կողմէ կ'ընտրուին։**

## 4. ԴԱՍ. — ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԸ

**8. Սիսի կաթողիկոսութիւնը** — *Հայոց Կաթողիկոսութիւնը, որ Ս. Գր. Լուսաւորչէն սկսած է, միշտ Ս. Էջմիածին չմնաց։ Ժամանակով, Կաթողիկոսական աթոռը շատ տեղեր փոխադրուեցաւ։ Ներսէս Շնորհալի և ուրիշներ Հռոմկլա նստան։ Գրիգոր Է. Անաւարզացի Կաթողիկոսէն* (1293—1307) *մինչեւ Գրիգոր Թ. Մուսաբեկեանց* (1439—1441) *Կաթողիկոսական աթոռը Սիս փոխադրուեցաւ։* 1441*ին ուզեցին նորէն Էջմիածին փոխադրել Կաթողիկոսական աթոռը և հրաւիրեցին որ Մուսաբէկեանց՝ Սիսէն ելլէ ու Էջմիածին երթայ նստի, բայց Գրիգոր Թ. Մուսաբէկեանց ժողովին վճռին չանսաց. ուստի անոր տեղը Վիրապեցի Կիրակոս Եպիսկո-*

---

(*) Այս օրինագիրքը Ռուսերէն բառով Փոլոժէնիա կ'ըսուի։

*պոսն Հայրապետ ընտրեցին ամենայն Հայոց՝ Ս. Էջմիածնի մէջ։*

*Մուսաբէկեանց շարունակեց Սիսի Կաթուղիկոսութիւնը։ Անոր մահուընէ ետք Սիսի Կաթուղիկոսութեան յաջորդ ընտրուեցաւ Կարապետ Եպիսկոպոս։ Սիսի Կաթուղիկոսութիւնը մինչեւ հիմա կը շարունակէ «Տանն Կիլիկիոյ» Կաթողիկոսութիւն անունով։ Սիսի Կաթուղիկոսութեան իշխանութիւնը մասնական է, եւ ինք հպատակ է Էջմիածնի Մայր-Աթոռին իրաւասութեան։*

*Այսպէս, Հայերն ունեցան երեք Կաթուղիկոսութիւն, մէկն ընդհանրական, որ է Էջմիածնի Կաթուղիկոսութիւն, միւս երկուքն ալ մասնական, այսինքն Սիսի Կաթուղիկոսութիւն ու Աղթամարի Կաթուղիկոսութիւն։*

**9. Էջմիածնի կաթուղիկոսութեան վիճակը 1440—1700ին.** — *Քանի մը Կաթուղիկոսներ Հռովմի Պապին հետ յարաբերութիւն ըրին։ Կաթուղիկոսական աթոռը յարափոփոխ վիճակներու բերմամբ, անձկութեան ու տագնապի շրջաններ ունեցաւ եւ տեղէ տեղ ալ տարուեցաւ։*

**10. Նոր Ջուղայի Հայերը.** — *Պարսիկ Շահաբբաս Թագաւորին օրով* (1605*ին*) *Նախիջեւան գաւառին Հայերը ստիպուեցան երթալ Սպահանի մօտերը բնակիլ։ Ճամբորդութեան միջոցին շատ կը նեղուէին, բայց քիչ ատենէն կրցան ծաղկիլ հարստանալ։* 1722*ին Աֆղաններ Պարսկաստան արշաւեցին։ Այդ միջոցին ալ Պարսիկ Նատիր Շահը Հայերուն մեծամեծ չարիքներ ըրաւ, բայց* 1828*էն ետքը նորէն սկսան հանդիստ վիճակ ունենալ։*

---

**8.** Կաթուղիկոսական աթոռը Էջմիածնէն զատ ո՞ր քաղաքներ փոխադրուած է: Ե՞րբ Սիս փոխադրուեցաւ Աթոռը: Ինչո՞ւ համար Գրիգոր Թ. Մուսաբէկեանցի օրով ուրիշ Կաթուղիկոս ալ ընտրեցին: Ի՞նչ իշխանութիւն ունի Սիսի Կաթուղիկոսը: Իսկ Էջմիածնի՞նը:

Հայերը քանի՞ Կաթուղիկոսութիւն ունեցան: — **9.** Ի՞նչ էր Էջմիածնի վիճակը՝ 1440էն 1700 : — **10.** Ե՞րբ եւ ո՞ր տեղէն Հայեր գաղթեցին Պարսկաստանի Սպահան քաղաքը : 1722ին, Աֆղաններու արշաւանքին ատեն, Նատիր Շահ ի՞նչ ըրաւ Հայերուն :

## 5. ԴԱՍ. — ԹՈՒՐՔԻՈՅ ՀԱՅԵՐԸ

**11. Կ. Պոլսոյ Պատրիարքական Աթոռի սկիզբը.** — *Ո՛րչափ Էջմիածնի Կաթուղիկոսական աթոռը կ'իյնար, այնչափ անդիէն ուրիշ մայրաքաղաքի Պատրիարքական աթոռ մը թէ՛ ազդեցութեամբ և թէ՛ հոն պատահած կրօնական դէպքերով նշանաւոր կ'ըլլար։ Տեսնենք ե՞րբ սկսաւ այս Պատրիարքական աթոռը։*

*Արդէն Հայերը սկսած էին Յունաստան, Փոքր Ասիոյ զանազան կողմերը եւ գլխաւորաբար Կ. Պոլիս գաղթել։ Այս մայրաքաղաքին Հայ գաղթականներուն թիւը ԺԴ. Դարուն շատ աճեցաւ, այնպէս որ առանձին Եպիսկոպոս ունէին։ 1307 թուականին, Սիսի ժողովին մէջ Յուսիկ Իստանպօլա Եպիսկոպոս մը կը յիշուի։ Սուլթան Մէհմէտ Բ. Ֆաթիհ, 1453ին, Կ. Պոլիսն առնելէն ետք, որպէսզի Հայերը Յոյներէն վար չմնան, Պրուսայի Յովակիմ Եպիսկոպոսը Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարք կ'անուանէ, և Փոքր Ասիոյ ու Յունաստանի Հայոց հոգեւոր գլուխ կը կարգէ։ Պատրիարքներն Էջմիածնի Կաթուղիկոսներուն իշխանութեան տակ էին ու կ'ընտրուէին, ինչպէս մինչեւ հիմայ, Կ. Պոլսոյ և գաւառներու եկեղեցական ու աշխարհական Երեսփոխաններուն ձեռքով ու կը վաւերացուէին Սուլթաններէն։*

**12. Երուսաղէմի Պատրիարքութիւնը.** — *Երուսաղէմի մէջ ալ վաղուց շատ մը ուխտատեղիներ ունեցած ենք։ Հոնտեղի առաջին Եպիսկոպոսն եղած է Յակոբոս առաքեալը։ Իսկ 1311ին, Հայերուն առաջին Պատրիարք*

*եղաւ Սարգիս Եպիսկոպոսը որ հրովարտակն առած էր Եգիպտոսի Սուլթանէն։ Երուսաղէմի Հայ Պատրիարքները կը կոչուին նաեւ Վանահայր և Պետ Ս. Յակոբեան Միաբանութեան և կը հսկեն Տնօրինական Սուրբ Տեղերուն ու Վանքերուն վրայ։ Ամէն տարի Զատկին ամէն երկիրներէ հազարաւոր Հայեր Երուսաղէմ ուխտի կ'երթան։*

---

**11.** Ե՞րբ սկսան աճիլ Պոլսոյ Հայերը։ Ո՞վ եղաւ առաջին Պատրիարք Կ. Պոլսոյ։ Պատրիարքի ընտրութիւնը ո՞վ կը կատարէ եւ ի՞նչպէս։
**12.** Ի՞նչ գիտէք Երուսաղէմի Պատրիարքութեան վրայ։

## 6. ԴԱՍ. — ԿԱԹՈԼԻԿ ՀԱՅԵՐ

**13. Հայ Հռոմէականներու սկիզբը.** — *Այս միջոցին Կ. Պոլիս Հայ-հռոմէական սակաւաթիւ հասարակութիւն մը կազմուած էր որ հետզհետէ կ'աճէր։ Եփրեմ՝* 1701*ին, Աւետիք՝* 1702*ին ու* 1705*ին, Յովհաննէս Զմիւռնիացի՝* 1707*ին, Սահակ Ապուչեխցի՝* 1712*ին, Յովհաննէս Գանձակեցի՝* 1715*ին, Յովհաննէս Կոլոտ՝* 1720*ին, Յակոբ Նալեան՝* 1744*ին, Զաքարիա՝* 1780*ին, Յովհաննէս Համատանցի՝* 1748*ին ու Պօղոս՝* 1823*ին, նեղեցին Հայ-հռոմէականները։ Բենեդիկտոս ԺԴ. Պապն անոնց հոգեւոր կառավարութիւնը Հայ-հռոմէական Եպիսկոպոսի մը յանձնեց* 1758*ին։ Ասիկա Կ. Պոլսոյ Լատին Նուիրակին իրաւասութեան տակն էր։ Հայ-հռոմէականներու հոգեւոր պէտքերը կը հոգային Պապէն ղրկուած քարոզիչներ, մանաւորապէս Յիսուսեանները որ Կ. Պոլսոյ մէջ ճիւղ մ'ունէին։ Յիսուսեաններու կեդրոնն էր Ղալաթիոյ այն եկեղեցին որ մինչեւ հիմա իրենց անունը կը կրէ։*

**14. «Հրաւէր սիրոյ».** —1781*ին, Հայ-հռոմէականները քիչ մը հանգիստ գտած էին։ Երկու համայնքին ոմանց մէջ միանալու բաղձանքն արծարծուեցաւ՝ նկատի առ-*

նելով կրօնական բաժանման հետեւանքով ազգին եղած վնասները։ Քանի մը տարի նախնական բանակցութիւններէ ետք, վերջապէս 1820ին Կ. Պոլսոյ մէջ ժողով գումարուեցաւ որուն ներկայ էին Էջմիածնի Կաթողիկոսին Նուիրակ-գործակալը, Կիլիկիոյ Կաթողիկոսն անձամբ, Կ. Պոլսոյ Պօղոս Պատրիարքը, Երուսաղէմի Պատրիարքին փոխանորդը, շատ մը Արքեպիսկոպոսներ, Եպիսկոպոսներ, Հայ և Հռոմէական Վարդապետներ և երեւելիներ։ Այս առթիւ հրատարակուեցաւ «Հրաւէր սիրոյ» տետրակը։ Թէեւ ժողովքին բաղձանքը բարի ու գովելի, բայց յաջողութիւն մը չունեցաւ։

**15. Հայ-Հռոմէականներու Պատրիարքութեան սկիզբը.** — Հայ-հռոմէականները, 1850ին, Կ. Պոլսոյ մէջ Եպիսկոպոսական աթոռ մը ունեցան որ հետզհետէ իր իշխանութիւնը տարածեց միւս բոլոր Հայ-հռոմէական Եպիսկոպոսներուն վրայ։ 1866 Սեպտեմբեր 14ին Կիլիկիոյ Հայ-հռոմէական Եպիսկոպոսները, Պապին Նուիրակ Յովսէփ Վալէրկայի գահերէցութեամբ, Զըմմառ (Լիբանան) ժողվուեցան ու ըստ Արեւելեան կանոններու, Կ. Պոլսոյ Նախագահ Անտոն Հասուն Գերապայծառն իրենց Պատրիարք ընտրեցին «Կիլիկիոյ Պատրիարք» տիտղոսով։

Այս թուականէն ի վեր Հայ-հռոմէականները Պատրիարք ունին՝ որուն աթոռը Կ. Պոլիս փոխադրուեցաւ 1867 Յուլիս 10ին։

---

**13.** Պոլսոյ Հայերուն մէջ ե՞րբ սկսաւ Կաթոլիկութիւնը։ Ո՞ր Պատրիարքներ անոնց դէմ հալածանք բրին։ Պենետիկտոս ԺԴ. Պապը ի՞նչ բրաւ Հայ հռոմէականներուն։ Ո՞վ կը հոգար անոնց հոգեւոր պէտքերը։ (Ի՞նչ ըսել է հոգեւոր պէտք)։ — **14.** Ի՞նչ է *Հրաւէր սիրոյ* բռնուածը եւ ի՞նչ առիթով հրատարակուեցաւ։ — **15.** Հայ-հռոմէականները ե՞րբ Պատրիարք ունեցան։ Ո՞վ եղաւ առաջին Պատրիարքը եւ ո՞ւր ընտրուեցաւ։ Ո՞ւր է Զըմմառ։ Ե՞րբ Պոլիս փոխադրուեցաւ Հայ-հռոմէականներուն Պատրիարքութիւնը։

## 7. ԴԱՍ. — ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**16. Մխիթար Աբբայ եւ Մխիթարեանները.** — 1676 *Փետրուար 7ին Սեբաստիոյ մէջ ծնաւ Մխիթար։ Պզտիկութենէն՝ կղերական ըլլալու անզուսպ բաղձանք մ'ունէր։ Հազիւ* 15 *տարեկան, նոյն քաղքին՝ մինչեւ հիմա մեծ ուխտատեղի՝ Ս. Նշան վանքը մտաւ ուր աւազանի (Մանուկ) անունը փոխելով՝ Մխիթար կոչուեցաւ։ Նոյն վանքը քանի մը տարի մնալէ ետք, ուրիշ զանազան վանքեր պտտեցաւ։ Եւրոպացի քարոզիչներու հետ տեսակցելով՝ Արեւմուտք երթալ մտածեց։ Անցաւ Հալէպ ու անկէ Արեւմուտք։ Սակայն զանազան արգելքներ պատահելով՝ Սեբաստիա վերադարձաւ և* 1696*ին Վարդապետ ձեռնադրուեցաւ։ Անկէ ետք, միտքը դրաւ տարածել Հայոց մէջ ուսմունքն ու ընթերցանութիւնը։ Ասոր մէջ յաջողելու համար՝ ձեռնարկեց հաստատել Միաբանութիւն մը, և այս նպատակով,* 1700*ին, Կ. Պոլիս եկաւ։ Հոս իր քարոզութեամբ քանի մը ընկեր շահեցաւ որոնց հետ առաջին անգամ իր Միաբանութեան հիմը դրաւ* (1701 *Սեպտեմբեր* 8), *նուիրելով զանիկայ Ս. Աստուածածնի առանձին պաշտպանութեան։ Հռոմէականութեան յարելուն համար, Աւետիք Պատրիարքի յարուցած հալածանքի ատեն,* 1702*ին, Մխիթար իր ընկերներով ստիպուեցաւ Կ. Պոլսէն փախչիլ։*

*Երկար ու վտանգաւոր ճամբորդութենէ մը ետք,* 1703*ին Մորա կղզին հասաւ ու Մեթոն քաղաքը բնակեցաւ։ Մխիթար* 1712*ին, Ս. Բենեդիկտոսի կանոններով Միաբանութիւն մը կազմեց։* 1717*ին Վենետիկ անցաւ ու բնակութեան տեղ խնդրեց։ Վենետիկի նոյն ատենուան Հասարակապետութեան օրէնքը քաղաքին մէջ նոր վանք չինել արգիլած ըլլալով՝ Ծերակոյտը քաղաքէն*

*դուրս Ս. Ղազարու կղզին բնակութեան համար Մխիթարին տուաւ։ Այս կղզիին վրայ Մխիթար երրորդ անգամ հաստատեց իր Միաբանութիւնը,* 1717 *Սեպտ.* 8։ *Այնուհետեւ անվրդով խաղաղութեամբ շարունակեց այս միաբանութիւնը որուն Հիմնադիր-Աբբահայրն եղաւ Մխիթար։ Այս բազմարդիւն Վարդապետը, որ Հայոց այս վերջին անգամ լուսաւորութեան պատճառ եղած է, իր կեանքը կնքեց* 1749 *Ապրիլ* 27, *իր Աբբայութեան* 47*րդ տարին,* 74 *տարեկան հասակին մէջ։ Մխիթար Աբբահօր յաջորդեց Վենետիկի մէջ Ստեփաննոս Մելքոնեան։*

**17. Վիեննայի Մխիթարեանները.** — *Ստեփաննոս Մելքոնեան Աբբային ատեն, վանքին կառավարութեան մասին միաբաններուն մէջ գժտութիւն մը ծագելով՝ անոնց մէկ մասը Ս. Ղազարու Միաբանութենէն բաժնուեցաւ և Թրիէսթի մէջ, Մարիամ Թերեզա կայսրուհիին պաշտպանութեամբ, Մխիթարեան Միաբաններու նոր վանատուն մը հաստատեց։*

*Բայց* 1807*ին, երբ Ֆրանսացիները Թրիէսթ արշաւեցին, Վանքին ստացուածքները կողոպտուեցան, որով Մխիթարեանները ստիպուեցան Վիէննա երթալ. Ֆրանցուա Ա. կայսրը մարդասիրութիւն ցոյց տուաւ, որով հոն հաստատուեցան։*

---

**16.** Ո՞ւր ծնաւ Մխիթար Աբբայ եւ ե՞րբ: Ի՞նչ գիտէք իր կենսագրութեան եւ գործունէութեան վրայ: Ե՞րբ Կաթոլիկ եղաւ եւ ինչո՞ւ: Մետոն քաղաքէն ո՞ւր անցաւ: Վերջապէս ո՞ւր հաստատուեցաւ Մխիթարեանց վանքը: — **17.** Ե՞րբ հաստատուեցաւ Վիէննայի Մխիթարեան վանքը, եւ ինչո՞ւ։



# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ.

## 1. ԴԱՍ. — ԱՓՐԻԿԷ

**1. Ափրիկէ** Եւրոպայի հարաւակողմն է, սահմանները են՝ Հիւսիսէն Միջերկրականն։ Արեւելքէն՝ Կարմիր ծով ու Հնդիկ Ովկիանոս։ Արեւմուտքէն՝ Խաղաղական Ովկիանոս։

**2. Ծովեզերքը** շատ խորտուբորտ չէ։ Արեւմուտքի կողմն է՝ Կուինէի ծոցը և Կանաչ հրուանդանը։ Արեւելք՝ Կուարտաֆուի հրուանդը։ Հարաւակողմն է՝ Բարեյոյսի գլուխը։ Գլխաւոր կղզիներն են՝ Ատլանդեանի մէջ՝ Մատէրա կղզին, Գանարեան և Ս. Հեղինէ կղզիներ։ Հնդկական Ովկիանին մէջ՝ Մատակասքար, Ռէիւնիոն և Մորիս կղզիները։

**3. Լեռ ու հովիտ.** — Լեռնաշղթաներն են՝ Հիւսիսի կողմը՝ Ատլաս, Արեւելքի կողմը՝ Եթովպիական և Քիլիմանճարօ (6000 մեթր), Հարաւակողմն է՝ Հարաւային լեռնադաշտը։

**4. Գետ ու լիճ.** — Նեղոս, Քոնկօ և Զամպէզ կը բղխին Մեծ լիճերու երկրէն։ Աս լիճերն են՝ Վիքթորիա, Թանկանիքա և Նիասա։ Նիժէր ու Սենեկալ գետերը Արեւմուտքի կողմէն կը հոսին։ Կայ նաեւ Չատ լիճը՝ Սուտանի մէջ։

**5. Կլիմա.** — Ափրիկէի կեդրոնը խոնաւ ու տաք է։ Երկու կողմերը կան ուրիշ երկու գօտիներ՝ նոյնպէս տաք, բայց չոր։ Աս գօտիներն անապատներ են, որոնց մեծագոյնն է Սահարա։ Հիւսիսի ու Հարաւի կողմերը կան երկու լեռնոտ ու բարեխառն գօտիներ։

**6. Արտադրութիւն.** — Ափրիկէ ունի հարուստ հանքեր՝ երկաթի, հանքածուխի, ոսկիի ու ադամանդի։

*կեդրոնը կը գտնուին ընդարձակ՝ կոյս անտառներ, ուր կան փիղեր, ռնգեղջիւրներ, ծովաձիեր, անալութներ (ընձուղտ), նաեւ առիւծ, չնագայլ, բորեան, եւն:*

---

**1.** Եւրոպայի ո՞ր կողմն է Ափրիկէ: Որո՞նք են սահմանները: — **2.** Ծովեզերքը ի՞նչպէս է: Ո՞ր կղզիներն ու հրուանդանները կան Ափրիկէի շուրջը: — **3.** Որո՞նք են լեռներն ու հովիտները: — **4.** Որո՞նք են գլխաւոր գետերն ու լիճերը: — **5.** Ի՞նչպէս է կլիման: — **6.** Որո՞նք են արտադրութիւնները:

## 2. ԴԱՍ. — ԱՓՐԻԿԷ (*Շար.*)

**7. Բնակիչները.** — *Հիւսիսի և Հիւսիս-արեւելքի բնակիչները Սպիտակ կամ Սեմական ցեղէն են՝ մեծ մասով Արաբացի ու Պերպեր: Մնացած մասերու բնակիչները սեւամորթ (խափշիկ) են: Կան նաեւ Եւրոպացիներ:*

**8. Անկախ երկիրներ.** — *Ափրիկէի մէջ միայն երկու անկախ Պետութիւն կայ.* 1. Մարոքի *կայսրութիւնը, Հիւսիս-արեւմուտքի կողմը, մայրաքաղաք՝ Ֆէս:* 2. Եթովպիոյ *կայսրութիւնը, Կարմիր ծովին Հարաւակողմը, մայրաքաղաք՝ Ադիս Աբաբա:*

**9. Եւրոպական ստացուածքներ.** — *Ափրիկէի մեծ մասը Եւրոպական Պետութիւններու իշխանութեան տակ է: 1890ին Եւրոպական Պետութիւնները դաշնագիր մը ստորագրեցին որով Ափրիկէի ներցամաքային մասերը իրենց մէջ կը բաժնէին և սահմաններ կը գծէին իրենց տիրելիք երկիրներուն՝ հոն գաղթականութիւն հաստատելու համար:*

**10. Ֆրանսական բաժինն է՝** *Ալճէրիա, Թունուզ, Սենեկալ, Մադակասքար և Ռէիւնիոն կղզիները:*

**11. Անգղիական բաժինն է՝** *Եթովպիայի Հարաւակողմը՝ Անգղիական Արեւելեան Ափրիկէ կամ Եգիպտական Սուտան (Նուպիա, Տարֆուր, Գորտոֆան, Պահր-էլ-Կա-*

պէլ, եւայլն) և Հարաւային ծայրը Քաբի գաղթականութիւնը, Թրանսվաալ և Օրանժ։

**12.** **Գերմանական բաժինն է՝** *Արեւելեան Ափրիկէ և Հարաւ-արեւմտեան Ափրիկէ։*

**13.** **Փորթուկալի բաժինն է՝** *Արեւելեան Ափրիկէի Գաղութները՝ (մայրաքաղաք Մոզամպիք), նաեւ արեւմտեան կողմը՝ Անկոլա, և Կանաչ հրուանդան ու Մատեր կղզիները։*

**14.** **Պելճիական բաժինն է՝** *Քոնկոյի անկախ Պետութիւնը՝ Հարաւային լեռնադաշտին կեդրոնը։*

**15.** **Թուրքիոյ ստացուածքն է՝** *Թարապուլուս, Միջերկրականի վրայ։ Եգիպտոս, մայրաքաղաք Գահիրէ* (580,000 *բնակիչ), Նեղոսի աջ կողմը։ Օսմանեան գերիշխանութեան տակ և հարկատու է։ Կը կառավարուի փոխարքայով մը (Խտիվ)։*

---

**7.** Ի՞նչ ցեղէ են Ափրիկէի բնակիչները: — **8.** Որո՞նք են անկախ երկիրները: — **9.** Որո՞նք են Եւրոպական ստացուածքները: — **10.** Ո՞ր մասերը Ֆրանսական ստացուածքներ են: — **11.** Անգղիայի՞նը: — **12.** Գերմանիայի՞նը: — **13.** Փորթուկալի՞նը: **14.** Պելճիքայի՞նը: — **15.** Թուրքիայի՞նը:

---

## 3. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

1. *Որո՞նք են Ասիայի մեծ լեռնադաշտերն ու լեռնաշղթաները։* — 2. *Ի՞նչ է Հնդկաստանը։ Եւրոպական ո՞ր Պետութեան կը պատկանի,* — 3 *Ասիայի մէջ ո՞ր երկիրներն ունի Ֆրանսան։* — 4. *Որո՞նք են Ռուսիայի գլխաւոր գետերը։*

1. *Որո՞նք են Ափրիկէի մեծ լեռնաշղթաները։* — 2. *Ափրիկէի երեք մեծ լիճերը։* — *Է՞ն մեծ գետերը։* — 4. *Ափրիկէի մէջ Ֆրանսայի գաղթականութիւնները որո՞նք են։* — 5. *Անգղիական գաղթականութիւնները։* — 6. *Գերմանական գաղթականութիւնները։* — 7. *Ափրիկէի մէջ Փորթուկալի ստացուածքները որո՞նք են եւ ո՞ր կողմն են։* — 8. *Ի՞նչ գիտէք Եգիպտոսի վրայ։*

---

### 1. ԱՍԻԱՑԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՆ ԵՆ

1. *Միւցիւ-Հիթօ, կայսր (Միքատօ) Ճաբոնի։* — 2. *Նորօտօմ, Թագաւոր Գամպօճի։* — 3. *Չուլալոնկ-Քորն, Թագաւոր Սիամի։* — 4. *Եու-Քիէնկ, Թագաւոր Գորէայի։* — 5. *Մուզաֆֆէր-էտտին, Շահ Պարսկաստանի։* — 6. *Ֆէյսալ-լա Թուրքի, Սուլթան Մասքաթի։* — 7. *Թանն-Թայի, Թագաւոր Աննամի։* — 8. *Հապիպուլլահ Խան, Էմիր Աֆղանիստանի։* — 9. *Սէյտ-Ապտիւլ Ախատ, Էմիր Պուխարայի։* — 10. *Գուանկ Սիւյ, Գոկսիխան կայսր Չինաստանի. (Կ'ըսուի նաեւ Զայ-Թիէն, Արեւու կամ Երկնքի զաւակ)։* — 11. *Միր Խուտայար, Խան Պէլուճիստանի։*

### 2. ԱՖՐԻԿԷԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՆ ԵՆ

1. *Մէնէլիք, Կայսր (Նէկիւս) Հապէշիստանի եւ Եթովպիայի։* — 8. *Սէյտի Ալի, Պէյ Թունուզի,* — 3. *Աապպաս Հիլմի, Փոխարքայ (Խտիվ) Եգիպտոսի։*

### 3. ԱՍԻԱՑԻ ՅԱՏՈՒԿ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՏԻՏՂՈՍՆԵՐ

*Սուլթան, Խան, Շահ, Էմիր կամ Ամիրապետ, Խալիֆա, Մահարաճա, Նապապ, Պէյ, եւայլն։*

### 4. ԿՐՕՆԱԿԱՆ ՏԻՏՂՈՍՆԵՐ

*Նահապետ, Պապ, Կաթողիկոս, Պատրիարք, Ազգապետ, Շէյխ, Պոնզ (Չինի մէջ), Լամա (Թիպէթի մէջ)։*

### 5. ՎԱՐՉԱԿԱՆ ՏԻՏՂՈՍՆԵՐ

*Նախագահ, Դեսպան, Հիւպատոս, Կուսակալ, Կառավարիչ, Նախարար, Վերատեսուչ, Մանտարին (Չինի մէջ)։*

### 6. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՏԻՏՂՈՍՆԵՐ

*Սպարապետ, Հրամանատար, Զօրապետ, Մարաջախտ, եւայլն։*

### 7. ԵՒՐՈՊԱՑԻ ՄԷՋ ԱԶՆՈՒԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՏԻՏՂՈՍՆԵՐ

*Ասպետ, Մարքիզ, Կոմս, Արքիդուքս, Դուքս, Իշխան, Լորտ, Պարոն, Սըր։*

---

## 4. ԴԱՍ. — ԱՄԵՐԻԿԱ, ԲՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐ

**16. Ամերիկան** *երկու մեծ ցամաք է, Հիւսիսային Ամերիկա եւ Հարաւային Ամերիկա, որոնք Բանամայի պարանոցով միացած են։*

**17. Սահմաններ.** — *Ամերիկայի սահմաններն են՝ Հիւսիսէն՝ Արջային կամ Սառուցեալ Ովկիանոս, Արեւելքէն՝ Ատլանտեան, Արեւմուտքէն՝ Խաղաղական Ովկիանոս, Հարաւէն՝ Ատլանտեան ու Խաղաղական միացած։*

**18. Ծոց, ծովեզր.** — *Հիւսիսէն՝ Հիւտսոնի ծոցը, Հարաւէն՝ Մեքսիքայի եւ Քալիֆորնիայի ծոցերը։*

*Ալասքայի, Քալիֆորնիայի, Լաբրատորի, Ֆլորիտայի և Եուքաթանի թերակղզիները։*

*Պաֆֆինի ծովը, Տավիսի և Պեհրինկայի նեղուցները Հիւսիսի կողմն են։ Սէն-Ռօք հրուանդանը Արեւելք, և Հորն հրուանդանը Հարաւակողմն են։*

**19. Կղզիներ.** — *Ամերիկայի կղզիներն են. Ալեութեան և Վանքուվէր, Թեռնեօվ, Մեծ ու Պզտիկ Անթիլեաններ, Մալուին և Թեռ տը Ֆէօ (Կրակէ երկիր)։*

**20. Լեռներ.** — *Հիւսիսէն Հարաւ կ'երկննայ մեծ լեռնաշղթայ մը որ կը բաժնուի երկու մասի՝ Ապառաժ լեռներ և Անտեան լեռներ։*

**21. Գետ եւ լիճ.** — *Հիւսիսային Ամերիկայի մեծ գետերն են՝ Միսիսիբի, որ կը թափի Մէքսիկայի ծոցը, Սէն-Լօրան որուն մէջ կը վազեն հինգ լիճերու ջուրերը՝ Սուբերիոր, Միչիկան, Հուրոն, Էրիէ, Օնթարիօ։ Աս վերջին երկու լիճերու մէջտեղն է անուանի Նիակարայի ջրվէժը։ Իսկ Հարաւային Ամերիկայի մեծ գետերն են՝ Բարանա և Ամազոն որ աշխարհի է՛ն մեծ գետն է։*

**22. Կլիմա.** — *Հիւսիսային Ամերիկայի ընդարձակ դաշտերը շատ ցուրտ են. Կեդրոնական Ամերիկան և Անթիլեան կղզիները՝ տաք, խոնաւ ու վատառողջ. իսկ Հարաւային Ամերիկան՝ շատ տաք ու խոնաւ, բայց կան նաեւ բարեխառն ու նոյն իսկ ցուրտ մասեր։*

**23. Բերք.** — *Ամերիկան կ'արտադրէ շատ տեսակ բերքեր. արմտիք, թանկագին քարեր ու մետաղներ, բամպակ, խահվէ, քաքաօ, քինքինա, քարիւղ, ընտիր փայտ և տեսակ տեսակ կենդանիներ։*

---

**16.** Ամերիկան քանի՞ մաս է։ — **17.** Որո՞նք են սահմանները։ — **18.** Որո՞նք են ծովերը եւ ծովեզերերը։ — **19.** Կղզինե՞րը։ — **20.** Հիւսիսէն Հարաւ ո՞ր լեռնաշղթան կայ եւ քանի՞ մաս կը բաժնուի։ — **21.** Որո՞նք են Ամերիկայի մեծ գետերն ու լիճերը։ — **22.** Ի՞նչպէս է Ամերիկայի կլիման՝ Հիւսիսային, Հարաւային եւ Կեդրոնական մասերուն մէջ։ — **23.** Ի՞նչ բերքեր կան։

## 5. ԴԱՍ — ԱՄԵՐԻԿԱ, ԲՆԱԿԻՉ ԵՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ

**24. Բնակիչ.** — *Ամերիկա անծանօթ երկիր մ'էր. 1492ին Քրիստափոր Գոլոմպոս Ճենովացի նաւապետը գտաւ զայն։ Հին բնակիչներն են՝ Կարմրամորթներ որոնցմէ դեռ մաս մը ժողովուրդ կայ։ Ամերիկայի արդի բնակիչներն են՝ Եւրոպացիներ, ինչպէս և Ափրիկէէն գաղթած սեւամորթներ։*

**25. Քաղաքական բաժանում.** — *Ամերիկա 16 երկիրներէ կը բաղկանայ՝ թէ՛ բնիկ և թէ՛ Եւրոպական իշխանութեամբ։ Ասոնք են.*

1. **Գանատա կամ Նոր Բրիտանիա** *որ առաջ Ֆրանսայի կը պատկանէր, հիմա Անգլիական երկիր է։*

2. **Միացեալ Նահանգներ**, *թուով 40 է աւելի, մեծ Հանրապետութիւն մը կը կազմեն. ունին զատ զատ վարչութիւն, բայց դաշնակից են իրարու։ Մայրաքաղաքն է Ուաշինկթըն։ Գլխաւոր քաղաք՝ Նիւ-Եորք, Ֆիլատելֆիա, Չիքակօ, Պոսթըն, Պալթիմոր, Սէն-Լուի, Նոր-Օռլէան, Սան-Ֆրանչիսքօ, եւայլն։ Նախագահը կ'ընտրուի ուղղակի ժողովուրդէն և կը պաշտօնավարէ 4 տարի։ Արդի Նախագահն է Րուզվէլդ։ 65 միլիոն բնակիչ։*

3. **Մեքսիկա** *ունի 27 դաշնակից նահանգներ, Միացեալ Նահանգներու հարաւակողմը։ Մայրաքաղաքն է՝ Մեքսիքօ։*

4. **Կեդրոնական Ամերիկա** *որ հինգ անկախ երկիր է. Կուաթէմալա, Հոնտուրաս, Սալվատոր, Նիքարակուա և Գոսթա Ռիքա։*

5. **Անթիլեան կղզիներ՝** *որոնք Եւրոպական Պետութեանց կը վերաբերին։*

6. **Գոլոմպիա**։ 7. **Էքուաթօր**։ 8. **Բէրու**։ 9. **Չիլի** 10. **Փաթակոնիա**։ 11. **Արժանթին**։ 12. **Ուրուկուէյ**, 13

Պրազիլիա ։ 14. Վենեզուելա ։ 15. Կեդրոնական Պետութիւններ (Պոլիվիա եւ Պարակուէյ) ։ 16. Կիւյեանա, *որ Պրազիլիայի հիւսիսակողմն է և կը պատկանի Գաղղիայի, Անգղիայի և Հոլանտայի ։*

---

**24**. Ո՞վ գտաւ Ամերիկան եւ ե՞րբ ։ Ի՞նչպէս էին նախկին բնակիչները ։ Ուրկի՞ց գաղթած են նոր բնակիչները ։ — **25**. Քաղաքական մեծ բաժանումները որո՞նք են ։ Ի՞նչ գիտէք Քանատայի վրայ ։ Միացեալ Նահանգները քանի՞ են եւ գլխաւոր քաղաքները որո՞նք են ։ Մեքսիքան ո՞ր կողմը կ'իյնայ եւ ո՞րն է մայրաքաղաքը ։ Կեդրոնական Ամերիկայի հինգ անկախ երկիրները որո՞նք են ։ Անթիլեան կղզիները որո՞ւ կը պատկանին ։ Կիւյեանա որո՞ւ ստացուածքն է ։

## 6. ԴԱՍ. — ՈՎԿԻԱՆԻԱ

**26**. **Ովկիանիա**, *երկրագունտի հինգ մասերէն մէկն է, կը բաղկանայ կղզիներէ. գլխաւորն է* Աւստրալիա ։

**27**. **Բաժանումներ**. — *Ովկիանիայի կղզիները կը բաժնուին չորս խումբի. Մալէզիա, Մելանէզիա, Պոլինէզիա և Աւստրալիա ։*

Ա. Մալէզիա *կը պարունակէ* 1. *Սոնտի Արշիպեղագոսը, (որուն գլխաւոր կղզիներն են Սումաթրա, Ճաւա, Պանքա և Թիմոր)*, 2. *Պոռնէօ կղզին*, 3. *Փիլիպպեան կղզիներ*, 4. *Զելեպեան կղզիներ*, 5. *Մոլուքեան կղզիներ ։*

Բ. Մելանէզիա *որ կը պարունակէ Նոր-Կուինէա և Նոր-Զելանտա ։*

Գ. Պոլինէզիա *կը բաղկանայ շատ մը մանր կղզիներէ ։*

Դ. Աւստրալիա *կամ* Աւստրալեան դաշնակցութիւն ։ 1. *Կը պատկանի Անգղիային, և կը բաժնուի 6 նահանգներու կամ գաղթականութիւններու ։ Տարածութիւնը Եւրոպայի երկու երրորդին չափ է ։ Բնակիչ՝* 4 *միլիոն ։ Գլխաւոր քաղաքներն են՝ Մէլպուրն, Սիտնէյ, Ատէլայտ ։*

*2. Աւստրալիա շատ գետեր չունի, գլխաւորն է Միւրրէյ գետը։ Արեւելեան ու Հարաւ-Արեւելեան կողմերը կան լեռներ որոնք Ովկիանոսին խոնաւութիւնը կը կտրեն։ Կղզիին կեդրոնը անբեր դաշտ մ'է։*

*3. Աւստրալիայի մասը կը կազմեն Թասմանիա և Նոր-Զելանտա։*

*4. Պաճարաբուծութիւնը Աւստրալիայի է՛ն գլխաւոր ու բարգաւաճ ճարտարարուեստն է։ Աւստրալիայէն Եւրոպա կը ղրկուին Մերինոս կոչուած ոչխարին փափուկ բուրդը, կաշի, մորթ, պահծու միս և ցորեն։ Անգղիացի գաղթականները կը մշակեն արմտիք, ծխախոտ, բամպակ և որթատունկ։*

*Արեւելեան կողմի լեռները կը պարունակեն հանքածուխի, պղինձի, ոսկիի և արծաթի հարուստ հանքեր։*

*Աւստրալիայի յատուկ կենդանիներն են՝ ագեվազ, սեւ կարապ, հնդիկ Ջայլեամ, ցուկեղ կոչուած կենդանին, քնարահաւ, եւայլն։*

*Սակաւաթիւ բնիկները կը պատկանին սեւ ցեղին, և թշուառ կեանք կը վարեն։*

---

**26.** Ովկիանիա ինչերէ՞ կը բաղկանայ: — **27.** Քանի՞ խումբ կղզիներու կը բաժնուի: — Ա. Մալէզիայի գլխաւոր կղզիները որո՞նք են: Բ. Մէլանէզիա ո՞ր կղզիներէ կը բաղկանայ: Գ. Իսկ Բոլինէզիա՞: Դ. 1. Աւստրալեան դաշնակցութիւնը ո՞ր Պետութեան ստացուածքն է: Քանի՞ վաղութ ունի: Տարածութիւնը ո՞րչափ է: Բնակիչը՞: Գլխաւոր քաղաքները որո՞նք են: 2. Աւստրալիայի բնական նկարագիրը ի՞նչ է: 3. Ո՞ր կղզիներ Աւստրալիայի մաս կը կազմեն: 4. Ո՞րն է գլխաւոր ճարտարարուեստը: Ի՞նչ բերք կ'երթայ Աւստրալիայէն Եւրոպա: Գաղթականները ի՞նչ կը մշակեն: Ի՞նչ հանքեր ունի: Ի՞նչ կենդանիներ Աւստրալիայի յատուկ են: Ի՞նչպէս են բնիկները:



## 7. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

1. Քարտէսի վրայ գրեցէք երկու Ամերիկաներուն գլխաւոր գետերն եւ ծովերը։ — 2. Քարտէսի վրայ նշանակեցէք ծոցերը, նեղուցները, Թերակղզիները երկու Ամերիկայի ծովեզերքներուն։ — 3. Պարզ կերպով գծեցէք Հիւսիս-Ամերիկայի ձեւը եւ նշանակեցէք գլխաւոր քաղաքական բաժանումներն ու քաղաքները։ — 4. Ցոյց տուէք Անթիլեան կղզիները։ — 5. Բանամայի պարանոցը ցոյց տուէք։ — 6. Գծեցէք Հարաւային Ամերիկան, Ամազոն ու Բարանա գետերուն ընթացքը ցոյց տուէք։ — 7. Երկու Ամերիկաներուն գլխաւոր լեռնաշղթաները ինչ ուղղութիւն ունին։ — 8. Քարտէսի վրայ ցոյց տուէք Եւրոպական Պետութեանց ստացուածքները։ — 9. Ի՞նչ բերքեր կու տայ Ամերիկան։ — 10. Սա քաղաքները որ երկրի մէջ են՝ Սան-Ֆրանչիսքօ, Օդդավա, Մեքսիքօ, Պալթիմօր, Քէպէք, Չիքակօ, Նիւ-Եօրք, Սանդիակօ, Պուէնոս-Այրէս, Մոնթէվիտէօ, Ռիօ-տէ-Ժանէյրօ։

---

1. Ըսէք՝ ուր է Ովկիանիան եւ որոնք են Մալէզիայի մեծ կղզիները։ Ովկիանիայի մէջ որոնք են Անգղիական ստացուածքները։ — 2. Պատմեցէք ինչ որ գիտէք Աւստրալիայի վրայ։ — 8. Ովկիանիայի մէջ որոնք են Հոլանտական ստացուածքները եւ որն է մայրաքաղաքը։ — 4. Քարտէսի վրայ նշանակեցէք Ովկիանիայի մեծ բաժանումները։ — 5. Շոգենաւ մը Հավրէն ճեմբայ կ'ելլէ՝ Ամերիկայի երկու մեծ նաւահանգիստներն երթալու համար։ Նախ կը հանդիպի Պոսթոն եւ ապա կ'երթայ Պուէնոս-Այրէս։ Ըսէք՝ որ նաւահանգիստները պիտի հանդիպի իր ընթացքին մէջ, եւ ատ նաւահանգիստները որ երկիրներու կը պատկանին։ — 6. Շոգենաւ մը Մարսիլիայէն կը մեկնի Ովկիանիայի Նումէա քաղաքն երթալու համար։ Ըսէք՝ որ ծովերէն պիտի անցնի, եւ որ նաւահանգիստներ պիտի հանդիպի՝ ի հարկին պաշար եւ ածուխ առնելու համար։

---

## 8. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ Թ. ԵՒ Ժ. ԱՄԻՍՆԵՐՈՒՆ

### ԱՍԻԱ ԵՒ ԱՓՐԻԿԷ

Ասիա (բնական մաս). — Ծովեզերքին վրայ կը գտնուին Հնդկաչինու, Հնդկաստանի, Արաբիայի, Փոքր Ասիայի Թերակղզիներն ու Ճաբոնի, Ֆորմոզայի, Ցէյլանի կղզիները։

Գլխաւոր լեռներն են՝ Հիմալայա, Քուէն Լիւն, Թիան-Զան, որ Բամիրի, Թիպէթի եւ Մոնկոլիայի լեռնադաշտերը կը շրջապատեն։

Գլխաւոր գետերն են՝ Ամուր, Դեղին գետ, Կապոյտ գետ, Բրահմաբուդրա, Գանգէս, Ինդոս։

Կլիման շատ ցուրտ է ձմեռը, իսկ ամառը՝ տաք։ Հարաւակողմը միշտ տաք է։

Ասիա (Քաղաքական մաս)։ — Ասիայի ժողովուրդները դեղին ցեղէ են՝ Արեւելեան կողմը, եւ սպիտակ ցեղէ են Արեւմտեան կողմը։

Գլխաւոր Պետութիւններն են՝ Սիպերիա եւ Արեւմտեան Թուրքաստան (որոնք Ռուսիոյ կը պատկանին), Ասիական Թուրքիա, Պարսկաստան, (մայրաքաղաք՝ Թեհրան), Աֆղանիստան, Պելուճիստան, Հնդկաստան (մայրաքաղաք՝ Կալկաթա), Բիրմանիա, Գոչէնչին, Թոնքին. Աննամ, Գամպոճ, Չինաստան (մայրաքաղաք Բեքին), Ճաբոն (մայրաքաղաք Թոքիօ)։

---

Ափրիկէ (Բնական մաս)։ — Ծովեզերքին վրայ են Կուարտաֆուի, Բարեյոյսի եւ Կանաչ հրուանդաններն ու Մատակասքար կղզին,

Գլխաւոր լեռներն են՝ Ատլաս եւ Եթովպիական լեռները։

Գլխաւոր գետերն են՝ Նեղոս, Քոնկօ, Զամպէզ, Նիկէր։

Կլիման՝ շատ տաք ու խոնաւ է՝ կեդրոնական մասերը։ Նոյնպէս տաք բայց չոր է ծովեզերքները։ Բարեխառն Հիւսիսի ու Հարաւի կողմերը։

Ափրիկէ (Քաղաք. մաս)։ — Հիւսիսային եւ Արեւելեան Հիւսիսային բնակիչները սպիտակ ցեղէ են, միւսները խափշիկ են։

Անկախ պետութիւններն են Մարոք եւ Եթովպիա կամ Հապէշիստան։

Եւրոպական ստացուածքներն են Ալճէրիա, Թունուզ, Սենեկալ, Քոնկօ՝ (Ֆրանսայի կը վերաբերին)։ Մատակասքար, Ռէիւնիոն, Անգղիական Արեւելեան Ափրիկէ. Քափի գաղթականութիւնը՝ Անգղիային են։ Գերմանական Արեւելեան Ափրիկէ՝ Գերմանիայի ստացուածքն է։ Մոզամպիք՝ Փորթուգալի կը վերաբերի։ Քոնկօ՝ Պէլճիքայի։ Թարապուլուս եւ Եգիպտոս՝ (մայրաքաղաք Գահիրէ) Թուրքիոյ մասն են։

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### Ա.

1. Ի՞նչ օրինակներով կրնաք ապացուցանել թէ երկիրը կլոր է։ — 2. Մեզի երեւցող մոլորակներուն ամէնէն մեծը որն է։ — 3. Երկիրը քանի շարժումներ ունի։ Օրինակներով բացատրեցէք։ — 4. Ի՞նչ ըսել է Հասարակած։ — 5. Ի՞նչ ըսել է Լայնութեան գիծ։ Երկայնութեան գիծ։ — 6. Ի՞նչ է Միջօրէականը։ — 7. Երկրի մը ուրիշ երկրէ ունեցած հեռաւորութիւնը ինչպէս կ'որոշուի։

### Բ.

1. Որո՞նք են Պոլսոյ պատմական շէնքերը։ — 2. Նոր շէնքերուն մէջ նշանաւորները։ — 3. Մեծ մզկիթները։ — 4. Քանի Մեծ Թաղերու բաժնուած է Պոլիս։ — 5. Որո՞նք են արուարձանները։ — 6. Այնթէփանոյէն կ'ուզենք երթալ Քեաղըտհանէ. ինչ ճամբով պիտի երթանք, որ տեղերէ պիտի անցնինք եւ երթուդարձի համար որչափ ծախք պիտի ընենք։ — 7. Պոլսոյ որ Թաղերուն մէջ կը բնակին Հայերը։ — 8. Մասնաւորապէս որ Թաղերու մէջ օտարականներ կը բնակին։ — 9. Օտար Պետու-

թիւններէն որո՞նք դեսպաններ ունին Պոլսոյ մէջ։ — 10. Որո՞նք են Պոլսոյ մեծագոյն պողոտաները։ — 11. Ո՞ր տեղերէ Տրամվայ կ'անցնի։ — 12. Որո՞նք են առեւտրական կեդրոնները։ — 13. Մեծ շուկան ո՞ր կողմ է, ի՞նչ բաժանումներ ունի՝ արհեստներու եւ առուտուրի տեսակէտով։ — 14. Մըսըր չարշըի մէջ ի՞նչ կը վաճառուի։ — 15. Պոլսոյ ո՞ր կողմերը մեծ դրամատուններ կան։

## Գ.

1. Ի՞նչ ըսել է աշխարհագրական եզր։ — 2. Որո՞նք են աշխարհագրական եզրերը։ — 3. Ասիական Թուրքիոյն քանի՞ վիլայէթի բաժնուած է։ — 4. Եւրոպականին մասը։ — 5. Ո՞ր վիլայէթներու մէջ են հետեւեալ քաղաքները. Թէքիրտաղ, Տրամա, Իւսկիւպ, Մանասթըր, Շքոտրա, Բրէվէզա, Սամսոն, Պոլու, Պիլէճիկ, Տէնիզլի, Նիյտէ, Խօզան, Ուրֆա, Շամ-Թարապուլուս, Համա, Ճիտտէ, Նէճէտ, Քէրպէլա, Սիւլէյմանիյէ, Հէքքեարի, Երզնկայ, Սղերդ, Մալաթիա, Մարտին, Ամասիա, Կեսարիա, Միտիլլի, Զանագ-Գալէ, Երուսաղէմ, Տէյր։

## Դ.

1. Ձեր գտնուած քաղաքէն Պոլիս երթալու համար ի՞նչ ճամբու հետեւելու է, եւ ի՞նչ կերպով ճամբորդելու է։ — 2. Որո՞նք են ձեր գաւառին բնական բերքերը, արհեստները, պատմական շէնքերը։ — 2. Ի՞նչ նիւթեր կը ներածուին։ — 4. Տաճկաստանի ո՞ր քաղաքները ուխտատեղի են իսլամներու եւ Քրիստոնեաներու։ — 5. Որո՞նք են Տաճկաստանի գլխաւոր բերքերը։

## Ե.

1. Ո՞ր երկիրներու մէջ են սա քաղաքները. — Լիվրբուլ, Փորթօ, Պէրկէն, Հավր, Կան, Ամսդերտամ, Պալ, Համպուրկ, Թրիէսթ, Իզմիր, Իզմիթ, Ռուսճուգ, Նիշ, Կալաց, Տուլչինօ, Տիրա, Սէվիլլ, Բարթօ, Նաբոլի, Պաքու։ — 2. Որո՞նք են Եւրոպայի մեծ լեռները։ — 3. Եւրոպա քանի՞ աւազանի կը բաժնուի եւ որո՞նք են գլխաւոր գետերը։ — 4. Ի՞նչ ազգեր կը բնակին Տաճկաստանի մէջ։ — 5. Պոլիսէն Թիֆլիս երթալու ճամբան ո՞րն է։

## Զ.

1. Ասիոյ սահմանները որո՞նք են։ — 2. Ամերիկայի սահմանները, —3. Ո՞րն է աշխարհի ամէնէն մեծ գետը, լիճը, ծովը, լեռը։ —Ո՞ր երկրի մէջ կ'իյնայ Կարմիր ծովը, Բամիրի հովիտը, Թիպէթի լեռնադաշտը, Ամուր գետը, Կովկասի լեռնաշղթան, Մէքքէ քաղաքը, Դաւրէժ կամ Թէպրիզ քաղաքը, Քէլաթ, Կալկաթա, Թոնքին, Քանդոն. իսկ Նիփոն կղզին։ — 5. Գրեցէք թէ հետեւեալ երկիրներու Վեհապետներուն տիտղոսը ի՞նչ է եւ արդի Վեհապետին անունն ի՞նչ է. Անգլիա, Ռուսիա, Ֆրանսա, Իտալիա, Յունաստան, Մոնաքօ եւ Մոնթէ Քարլօ, Սպանիա, Ամերիկայի Միացեալ Նահանգներ, Պուխարա, Պարսկաստան, Չին, Ճափոն, Եգիպտոս։

## Է.

1. Ի՞նչպէս է Եւրոպական Պետութիւններուն կառավարական ձեւը (Միապետական, Հանրապետական, եւայլն)։ — 2. Տիրող գերդաստաններուն կամ հարստութեանց) անու՛նը։ — 3. Եւրոպայի ազգերուն կրօնքը։

## ԹՈՒՐՔԻՈՅ ԱՐԴԻ ԵՐԿԱԹԵԱՅ ԳԻԾԵՐՈՒՆ ՑՈՒՑԱԿԸ

### Ա. ՄԱՍ. — ԱՆԱՏՕԼՈՒԻ ԳԻԾ

| | Քիլոմէդր |
|---|---|
| Հայտար-փաշա — Իզմիթ | 91 |
| Իզմիթ — Էնկիւրիւ | 485 |
| Էսկի-Շէհիր — Գոնիա | 444 |
| | 1020 |

### Բ. ՄԱՍ. — ԱՅՏԸՆԻ ԳԻԾ

| | |
|---|---|
| Իզմիր — Այտըն — Տինար | 376 |
| Մասնաճիւղեր | 139 |
| | 515 |

### Գ. ՄԱՍ. — ԳԱՍԱԲԱՅԻ ԳԻԾ

| | |
|---|---|
| Իզմիր — Գասապա — Ալա-Շէհիր | 168 |
| Ալա-Շէհիր — Աֆիոն Գարա-Հիսար | 252 |
| Սօմա եւ միացման գիծ | 95 |
| | 515 |

### Դ. ՄԱՍ. — ՊԷՅՐՈՒԹ — ԴԱՄԱՍԿՈՍԻ ԳԻԾ

| | |
|---|---|
| Պէյրութ — Դամասկոս | 155 |
| Դամասկոս — Հօրան | 103 |
| Աքեա — Դամասկոս | 253 |
| | 511 |
| Եաֆա — Երուսաղէմ | 86 |
| Մերսին — Ատանա | 67 |
| Մուտանիա — Պրուսա | 41 |

Համագումար՝ 2755 քիլոմէդր



# ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԻՒՆ



## 1. ԴԱՍ. — ԳԻԾ, ԿԷՏ, ՈՒՂԻՂ ԳԻԾ

**1. Գիծ.** — *Թղթի վրայ գծուած սա թելի պէս երկար բարակ պատկերը (Պատկ. 1) կը ցուցնէ գիծ մը։ ԱԲը գիծ մ'է։*




Պատկ. 1. — Գիծ




Պատկ. 2. — Կէտ

**2. Կէտ.** — *Սա վերի 2ᵒ. պատկերին մէջ ԳԴ և ԵԶ գիծերը իրար կը կտրեն Կ կէտին վրայ. և իրօք այն տեղն ուր երկու գիծ իրար կը կտրեն կէտ մը կը ցուցնէ։*

**3. Ուղիղ գիծ.** — *Առէք կտոր մը թել (Պատկ. 3) և ձեր երկու ձեռքերուն մէջ բռնելով քաշեցէք, բայց ոչ կտրելու աստիճան. այս թելը ուղիղ գիծ մը կը ցուցնէ։*

*Հիմա հոս կը նշանակեմ կէտ մը Ա (Պատկ. 4) և քիչ*




Պատկ. 3. եւ Պատկ. 4. — Ուղիղ գիծ

*մը հեռու ուրիշ կէտ մը Բ։ Միացնենք այս երկու կէ-*

*տերը, առաջ կուգայ ԱԲ գիծը որ մեր ձեռքի թելին նման է։ ԱԲը ուղիղ գիծ է։ Ուղիղ գիծը մէկ կէտէն միւս կէտը ամենէն կարճ ճամբան է։*

---

**1**. Թղթի վրայ գրիչով շինուած բարակ թելը ի՞նչ կ'ըսուի: — **2**. Իրար կտրող երկու գիծերու հանդիպած տեղը ի՞նչ կ'ըսուի: — **3**. Ի՞նչ է ուղիղ գիծը:

## 2. ԴԱՍ. — ԲԵԿԵԱԼ ԳԻԾ, ԿՈՐ ԳԻԾ

**4. Բեկեալ գիծ.** — *Տեսա՞ծ էք կայծակին ճերմակ փայլուն գիծը. — շատ մը ուղիղ գիծերու շարունակութիւնն է ան* (*Պատկ.* 5)։



Պատկ. 5. — Կայծակ




Պատկ. 6. — Բեկեալ գիծ

*Բեկեալ գիծ կը նշանակէ գիծ մը որ կարծես կոտրըտած է. այսինքն շատ մը ուղիղ գիծեր, երկայն կարճ, այլեւայլ ուղղութեամբ իրարու միանալով՝ կը կազմեն բեկեալ գիծը* (*Պատկ.* 6)։ *ԳԴԵԶԷԸ գիծերը միանալով կը կազմեն ԱԸ բեկեալ գիծը։*

**5. Կոր գիծ.** — *Ծիածանը* (*Պատկ.* 7)՝ *տեսած էք անշուշտ թէ՝ ինչպէս կլորաձեւ կ'երեւայ երկինքին երեսը։ Ծիածանը կոր գիծ մը կը ներկայացնէ, սա միւս ԻԼ* (*Պատկ.* 8) *կոր գիծին պէս։ Կոր գիծ մը ո՛չ ուղիղ գիծ է ո՛չ ալ ուղիղ գիծերէ կազմուած է։*



Պատկ. 7. — Ծիածան




Պատկ. 8. — Կոր գիծ :

---

4. Ի՞նչ է բեկեալ գիծը : — 5. Ի՞նչ է կոր գիծը :

---

## 3. ԴԱՍ. — ԱՆԿԻՒՆ

**6. Անկիւն.** — *Առէք մկրատ մը, բերանը քիչ բացէք կամ շատ բացէք* (Պատկ. 9 և 10). *երկու պարագային մէջ ալ մէկ մէկ անկիւն շինած կ'ըլլաք : ԱԲ և ԲԳ ուղիղ գիծերը* (Պատկ. 11) *իրար կը կտրեն Բ կէտին վրայ և կը կազմեն անկիւն մը :*



Պատկ. 9. Պատկ. 10.

*Նոյնպէս, երբ ԴԵ և ԶԵ գիծերը իրարու հանդիպին, կը կազմեն ուրիշ անկիւն մը որ առաջինէն աւելի խոշոր է, ինչպէս՝ եթէ մկրատը քիչ բանանք, պզտիկ անկիւն կը*




Պատ. 11. Անկիւն




Պատկ. 12. Անկիւն

*շինուի, չափ բանանք՝ մեծ անկիւն։ Այն կէտը ուր անկիւնը կը կազմուի, կը կոչուի անկիւնի գագաթ. Բ և Եը անկիւնի գագաթներ են։ Այն գիծերը որ անկիւնը կը կազմեն կը կոչուին անկիւնին կողմերը. ԱԲ և ԲԳ. ԴԵ և ԵԶ անկիւնի կողմեր են։*

---

**6.** Ի՞նչ է անկիւնը :

## 4. ԴԱՍ. — ՈՒՂՂԱՀԱՅԵԱՑ, ՈՒՂԻՂ ԱՆԿԻՒՆ

**7. Ուղղահայեաց.** — *Եթէ այս սեղանը գլխիվայր դարձընենք, սեղանին ոտքերը ուղիղ կը տնկուին. կըրնանք ըսել թէ սեղանին ոտքերը սեղանի եզերքներուն ուղղահայեաց են։*




**Պատկ. 13.** — Ուղղահայեաց

**8. Ուղիղ անկիւն.** — *Գըծենք ԱԲ գիծը և վերէն վար իջեցնենք ԴԳ գիծը։ Յայտնի կը տեսնուի որ կազմուեցաւ երկու անկիւն, երկուքն ալ իրարու հաւասար (ԱԳԴ = ԴԳԲի)։ Այս ԴԳ գիծը ուղղահայեաց կ'ըսուի. իսկ երկու հաւասար անկիւնները մէկ մէկ ուղիղ անկիւններ են։*

---

**7.** Օրինակով մը ցոյց տուէք թէ ի՞նչ է ուղղահայեաց գիծը : — **8.** Ի՞նչ կը կոչուի ուղղահայեաց գծի մը եւ ուրիշ ուղիղ գծի մը ձեւացուցած անկիւնը : Ի՞նչ անկիւն կ'ըսեն անոր :

## 5. ԴԱՍ. — ԱՆԿԻՒՆՆԵՐ (Շար.)

**9. Սուր անկիւն, բութ անկիւն.** — *Գիրք մը դրէք գրասեղանին վրայ և մէկ կողքը բռնելով՝ կամաց կամաց սկսէք բանալ. անկիւն մը կը կազմուի, այնպէս չէ՞, որ նախ փոքր է (Պատկ. 14), յետոյ երթալով*

կը մեծնայ, մինչեւ կը հասնի այն աստիճանին որ գրքին կողքը ուղիղ կը մընայ, այնպէս որ ո՛չ աջ կողմը ծռած է, ո՛չ ձախ կողմը։ Հոս ալ անկիւն մը կազմուեցաւ, բայց այս անկիւնը մեր ճանչցած ուղիղ անկիւնին պէս է. և իրաւ ալ գրքին բացուած կողքը ուղղահայեաց է սեղանին վրայ դրուած կողքին. (Պատկ. 16)։




**Պատկ. 14. եւ 15.** — Անկիւն

Կրնանք գրքին կողքը նորէն հետզհետէ բանալ. (Պատկ. 18). կը տեսնենք որ կը կազմուի անկիւն մը որ աւելի մեծ է նախորդ ուղիղ անկիւնէն։




**Պտկ. 16. եւ 17.** — Ուղիղ անկիւն

Այս կերպով կը տեսնենք որ գիրքը նախ պզտիկ անկիւն մը կազմեց Պատկ. 15ի պէս. այս տեսակ անկիւնին, որ ուղիղ անկիւնէն փոքր է, կ'ըսուի սուր անկիւն։




**Պատկ. 18. եւ 19.** — Բութ անկիւն

*Ցետոյ, երբ մէկ կողը միւսին վրայ ուղղահայեաց եկաւ, կազմեց ուղիղ անկիւնը* (*Պատկ.* 17)․ *իսկ երբ աւելի բացինք գրքին կողքը և ուղիղ անկիւնէն աւելի մեծ անկիւն մը կազմեցինք, առաջ եկաւ բութ անկիւն մը* (*Պատկ.* 19)։

9. Այլեւայլ անկիւններու օրինակներ տուէք :



## 6. ԴԱՍ. — ԶՈՒԳԱՀԵՌԱԿԱՆՆԵՐ

**10. Ուղղագիծ զուգահեռականներ.** — *Դիտեցէք սա պատկերին մէջ* (*Պատկ.* 20) *սանդուխին երկու եզերքները և անոնց վրայ գտնուող աստիճանները։ Ասոնք*






**Պատկ. 20–21.**
Զուգահեռականներ

*ուղիղ գիծեր են որոնց երկու ծայրերը ամէն տեղ իրարմէ միեւնոյն հեռաւորութիւնը ունին։ Եթէ կարելի ըլլար շատ ու շատ երկնցնել սանդուխին այս եզերքները կամ անոր աստիճանները, պիտի տեսնէինք որ ամենեւին իրարու չպիտի հանդիպէին։ Աւասիկ այս տեսակ ուղիղ գիծերը կ'ըսուին զուգահեռական։*

10. Զուգահեռական գիծերու օրինակներ տուէք :



## 7. ԴԱՍ. — ԲԱԶՄԱՆԿԻՒՆ

**11. Բազմանկիւն.** — *Սա վարի* 22 *պատկերը կը ցուցնէ բազմանկիւն մը։ Ինչպէս կը տեսնէք, բեկեալ գիծ*

*մ՚է, որ ունի շատ մը անկիւններ. այս անկիւնները անոր ծայրերը կամ կոներն են և մէկէ աւելի կող ունենալուն համար շատ անգամ բազմակոն ալ կ՚ըսուի։ Գիտե՞ք, ճիշտ ինչի՞ կը նմանի. պարտէզի մը կամ դաշտի մը մէջ տեսած էք հարկաւ նեղ ճամբաներ որոնք զիրար կը կտրեն այլեւայլ ուղղութեամբ (Պատկ. 23), և կը կազմեն բազմանկիւն ձեւեր։*



Պատկ. 23.




Պատկ. 22.
Բազմանկիւն

**12. Կանոնաւոր բազմակոն.** — *Բազմանկիւնի մը կանոնաւոր կ՚ըսուի երբ անոր բոլոր կողմերն ու բոլոր անկիւնները հաւասար են իրարու։ (Պատկ. 24)։*




Պատկ. 24. — Կանոնաւոր բազմակոն

---

**11.** Բազմակոնի օրինակներ ըսէք: — **12.** Ի՞նչ է կանոնաւոր բազմակոն ըսուածը:

## 8. ԴԱՍ. — ԵՌԱՆԿԻՒՆ

**13. Եռանկիւն.** — *Երբ բազմանկիւն մը երեք կողմ ունի, կը կոչուի եռանկիւն (Պատկ. 25)։*




Պատկ. 25. Եռանկիւն




Պատկ. 26. Հաւասարակողմ եռանկիւն




Պատկ. 27. Կողմնազոյգ եռնկն.

**14. Հաւասարակողմ եռանկիւն.** — *ԴԵԶ (Պատկ. 26) եռանկիւնին երեք կողմերն ալ իրարու հաւասար են. այս եռանկիւնը կը կոչուի հաւասարակողմ եռանկիւն։*

**15. Կողմնազոյգ եռանկիւն.** — *ԷԸԹ եռանկիւնին երկու կողմերը ԷԸ և ԷԹ իրարու հաւասար են. երբ այսպէս եռանկիւնի մը միայն երկու կողմերն իրարու հաւասար կամ զոյգ են, այն եռանկիւնը կը կոչուի կողմնազոյգ եռանկիւն։*

---

**13.** Ի՞նչ է եռանկիւն: — **14.** Ի՞նչ է հաւասարակողմ եռանկիւնը: — **15.** Կողմնազոյգ եռանկի՞ւնը:

## 9. ԴԱՍ. — ՔԱՌԱՆԿԻՒՆ

**16. Քառանկիւն.** — *Սա վարի ԱԲԳԴ (Պատկ. 28) բազմանկիւնը որ չորս անկիւններ ունի, կ՚ըսուի քառանկիւն։ Չորս հատ գլխաւոր և կանոնաւոր քառանկիւններ կան.*




Պատկ. 28. Քառանկիւն



Պատկ. 29. Ուղղանկիւն քառ.



Պատկ. 30. Զուգահեռակողմ եռն.

1. *Ուղղանկիւն քառանկիւն* (Պատկ. 29), *որուն չորս անկիւններն ալ ուղիղ են։* 2. *Զուգահեռակողմ* (Պատկ.

30), *որուն չորս կողմերը իրարու զուգահեռական են, բայց անկիւնները ուղիղ չեն*: 3. *Քառակուսի՝ որուն չորս կողմերն իրարու հաւասար և չորս անկիւններն ալ ուղիղ են*: 4. *Տարանկիւն կամ շեղանկիւն որուն չորս կողմերն իրարու հաւասար են, բայց անկիւններն ուղիղ չեն*:

---

**16.** Ի՞նչ է քառանկիւնը: Ուղղանկիւն քառանկի՞ւնը: Իսկ զուգահեռակողմ քառանկի՞ւնը: Քառանկիւն զուգահեռակո՞ղմը: Քառակուսի՞ն: Շեղանկի՞ւնը:

## 10. ԴԱՍ — ՇՐՋԱՆԱԿ

**17. Շրջանակ.** — *Կառքի մը կամ սայլի մը անիւը* (*Պատկ.* 31) *կը ներկայացնէ շրջանակ մը: Ուշադիր եղէք. անիւի շրջանակին բոլոր կէտերը հաւասարապէս հեռու*









**Պատկ. 31.** **Պատկ. 32.** **Պատկ 33.**

*են շրջանակին մէջտեղը գտնուող կէտէ մը. այս կէտը կը կոչուի կեդրոն* (*Պատկ.* 32. Կ):

**18. Շառաւիղ. տրամագիծ. լար. աղեղ. շօշափող. հատանող.** — *Սա մեծ շրջանակին վրայ* Կ *կեդրոնը գտնելէ յետոյ, անկէ* ԿԼ *գիծը գծեցէք շրջանակին վրայ. այս* ԿԼ *կ'ըսուի շառաւիղ:* ԱԲ *գիծը որ շրջանակին մէկ կէտէն միւս կէտը կ'անցնի՝ կեդրոնէն, կը կոչուի տրամագիծ:* ԳԴ *գիծը որ շրջանակին մէկ կէտէն ուրիշ կէտ մը կը հասնի, կեդրոնէն դուրս մնալով, կը կոչուի լար: Լարէն վեր գտնուած շրջանակի մասը* ԳԴ,

*կը կոչուի աղեղ։ ՉԷ գիծը որ շրջանակին մէկ կէտը շօշափելով կ'անցնի, կը կոչուի շօշափող. իսկ ՀՁ գիծը որ շրջանակին մէկ մասը կը կտրէ, կը կոչուի հատանող։*

---

**17**. Օրինակներ տուէք շրջանակը բացատրելու համար: — **18**. Ի՞նչ է Շառաւիղը՞: Տրամագի՞ծը: Լա՞րը: Աղե՞ղը: Շօշափո՞ղը: Հատանո՞ղը:

## 11. ԴԱՍ. — ԲԱԶՄԱԿՈՆՆԵՐՈՒ ՄԱԿԵՐԵՒՈՅԹԸ

**19. Բազմակոնի մակերեւոյթը.** — *Բազմակոնի մը գիծերուն մէջտեղ միջոց մը կայ. այդ միջոցը կը կոչուի մակերեւոյթ։ Ինչպէս՝ եռանկիւնի մակերեւոյթ, քառանկիւնի մակերեւոյթ։*




**Պատկ. 34.**
Եռանկիւնին մակերեւոյթը




**Պատկ. 35.**
Քառանկիւնին մակերեւոյթը

---

**19**. Ի՞նչ է բազմանկիւնի մակերեւոյթ ըսուածը:

## 12. ԴԱՍ. — ԲՈԼՈՐԱԿ

**20. Բոլորակ.** — *Տեսա՞ծ էք փայտէ կամ երկաթէ պզտիկ շրջանակ մը։ Եթէ թողուք որ այդ շրջանակը գետնին կամ աւազին վրայ իյնայ, հոն կը ձեւացնէ բոլորակ մը։* (*Պատկ.* 36)։ *Շրջանակին մէջի մասը կամ մակարդակը կ'ըսուի բոլորակ։*




**Պատկ. 38.**
Բոլորակ

---

20. Բոլորակի օրինակ մը տուէք:

## 13. ԴԱՍ. — ԾԱՒԱԼՆԵՐ

**21. Ծաւալ.** — *Գաւաթի մը մինչեւ կէսը ջրով լեցընենք (Պատկ. 37), ու մէջը քար մը նետենք. առաջ ջուրը ԱԲ գծին վրայ էր, հիմա կը բարձրանայ մինչեւ ԳԴ։ Յայտնի է որ քարը դուրս եղած ատեն տեղ մը կը բռնէր միջոցին մէջ, հիմա ալ տեղ մը բռնեց ջուրին մէջ, կամ ուրիշ խօսքով ջուրը իր տեղը քարին տուաւ։ Քարին բռնած այս տեղը կը կոչուի իր ծաւալը։*




Պատկ. 37 — Քարի մը ծաւալը

**22. Պրիսմայ.** — *Եկեղեցիին մէջ ջահեր կան. այս ջահերու տակէն կախուած են շատ մը ապակիի կտորներ. առէ՛ք անոնցմէ մէկ երկու հատ ու պիտի տեսնէք որ կանոնաւոր բազմանկիւնի ձեւեր ունին, ոմանց մէկ երեսը վեցկողմ ունի, ոմանց ութը, ոմանց տասը տասնուերկու, եւայլն։ Այս տեսակ ձեւերը կը կոչուին պրիսմայ։ Ուրեմն պրիսման կը ներկայացնէ ծաւալ մը որ կանոնաւոր բազմանկիւնի երեսներ ունի։ Վերի պատկերը վեցանկիւնի և վեցակողմեան պրիսմայ մը կը ներկայացնէ։*





Պատկ. 38. եւ Պատկ. 39. — Պրիսմայ

---

**21.** Ի՞նչ է մարմինի մը ծաւալը։ — **22.** Պրիսմայի օրինակ մը տուէք։



## 14. ԴԱՍ. — ԾԱՒԱԼՆԵՐ (Շար.)

**23. Զուգահեռակողմեր.** — *Սնտուկ մը որ վեց երեսներ ունի (Պատկ. 40), կը ներկայացնէ պրիսմայի*





Պատկ. 40. — Տոմինոյի տուփ   Պատկ. 41. — Զուգահեռակողմ

*նման ծաւալ մը։ Այս տեսակ պրիսմայ մը կը կոչուի զուգահեռակողմ. որովհետեւ դիմացի կողմերը իրարու զուգահեռական են։*

**24. Խորանարդ.** — *Ձեզմէ ո՞վ չէ տեսած տափալիի*



Պատկ. 42.
Ուլ



Պատկ. 43.
Խորանարդ

*կամ նարդի ուլ (թավլուի զար)։ Դիտած էք հարկաւ որ վեց հաւասար կողմեր ունի ան և ամէն մէկ կողմը կը ներկայացնէ մէկ քառակուսի։ Այս է աւասիկ խորանարդը (Պատկեր 43)։*



Պատկ. 45.
Բուրգ



Պատկ. 44.
Բրգաձեւ զանգակատուն

**25. Բուրգ.** — *Տեսած էք վանքերու կամ եկեղեցիներու զանգակատուները, որոնք երեք, վեց, ութը, եւայլն երեսներ ունին. այդ ձեւը (Պատկ. 44), կը կոչուի բուրգ։ Աս 45 պատկերն ալ բուրգի ձեւ է։*

**23.** Զուգահեռակողմի օրինակ մը տուէք : — **24.** Ի՞նչ է խորանարդը : — **25.** Ի՞նչ է բուրգը :

## 15. ԴԱՍ. ԿԼՈՐԱԿ ՄԱՐՄԻՆՆԵՐ


**Պատկ. 46 եւ 47.**
Մոմ եւ Գլան

**26. Գլան.** — *Եկեղեցիին սիւները, վառելու մոմ մը, վառարանին երկաթէ խողովակները մասնաւոր կլոր ձեւ մը ունին, այս ձեւին կ'ըսուի գլան կամ գլանաձեւ։*

*Գլանը ամէն տեղ միեւնոյն հաստութիւնը և վերի ու վարի կողմէն հաւասար շրջանակներ կը ներկայացընէ։* (*Պատկ.* 46—47)։

**26.** Գլանը բացատրեցէք : գծեցէք :

## 16. ԴԱՍ. ԿԼՈՐԱԿ ՄԱՐՄԻՆՆԵՐ (*Շար.*)

**27. Կոն.** —*Շաքարի գլուխներ տեսած էք հար-*


**Պատկ. 48.**
Աշտարակի մը գագաթը


**Պատկ. 49.**
Կոն

*կալ, նաեւ այնպիսի գմբէթներ կամ աշտարակներ, որոնց գագաթը կլոր է. այս երկուքն ալ կը ներկայացընեն կոնը։ Կոնը վերի կողմէն մէկ սրածայր կէտով կը վերջանայ, վարի կողմէն շրջանակով մը։* (Պատկ. 48—49)։

---

**27.** Կոն բռնուած ձեւի օրինակներ բերէք :

## 17. ԴԱՍ. — ԿԼՈՐ ՄԱՐՄԻՆՆԵՐ (*Շար.*)

**28. Հատեալ կոն.** — *Եթէ շաքարի գլուխին վերի մասը այնպէս մը կտրենք որ պզտիկ շրջանակ մը կազ-*





**Պատկ. 50. Պատկ. 51.** —Կոնի ստորոտ կամ խարիսխ

*մուի, կ'ունենանք հատեալ կոն մը։ Ուրեմն հատեալ կոնը այն կոնաձեւն է որուն վերի մասը աւելի պզտիկ շրջանակ մը կը ներկայացնէ՝ քան վարինը։*

---

**28.** Կոնի խարիսխ բռնուած ձեւը ո՞րն է : Գծեցէք եւ օրինակներ գտէք :

## 18. ԴԱՍ. — ԿԼՈՐ ՄԱՐՄԻՆՆԵՐ (*Շար.*)

**29. Գնտաձեւ.** — *Պզտի՛կ քարէ գնտակները, կամ ձգախէժէ (լաստիկ) շինուած պզտիկ կլոր փամփուշտները, որոնցմով կը խաղան տղաքը, գնտաձեւ մարմիններ են։ Գնտաձեւերին շրջապա-*



**Պատկ. 52.** Փամփուշտ **Պատկ. 53.** Գնտակ

*տը ճիշդ շրջանակ մ՚ է, որուն ամէն մէկ կէտը՝ ներսը գտնուած կեդրոնէն հաւասարապէս հեռու է։ Գնտաձեւը ծաւալ մ՚է. անոր շրջանակը կը կազմէ գնտաձեւին մակերեւոյթը։*

**39.** Ի՞նչ է գնտաձեւը։ Օրինա՞կ։ Գնտաձեւին կեդրոնը ո՞ւր է։



## 19. ԴԱՍ. — ՎԱՐԺՈՒԹԻՒՆՆԵՐ

1. *Մաքուր թղթի մը վրայ գծեցէք ուղիղ գիծ մը, բեկեալ գիծ մը, կոր գիծ մը։ — 2. Գծեցէք սուր անկիւն մը, ուղիղ անկիւն մը, բութ անկիւն մը։ — 3. Գծեցէք երկու զուգահեռական գիծեր. այս երկու գիծերէն մէկուն վրայ ուղղահայեաց մը իջեցուցէք։ — 4. Գծեցէք վեցակողմ բազմանկիւն մը, յետոյ գծեցէք վեցակողմ կանոնաւոր բազմանկիւն մը։ — 5. Գծեցէք որեւէ քառակողմ մը, յետոյ հաւասարակողմ եւ կողմնազոյգ եռանկիւն մը։ — 6. Գծեցէք որեւէ քառակողմ մը, յետոյ քառակուսի մը, ուղղանկիւն քառանկիւն մը, տարանկիւն մը, զուգահեռակողմ մը։ — 7. Գծեցէք շրջանակ մը, այս շրջանակին վրայ նշանակեցէք շառաւիղ մը, տրամագիծ մը, լար մը, աղեղ մը, շօշափող մը, հատանող մը։ — 8. Դպրոցին մէջ ինչ բաներ կը տեսնէք որ մեր սորված երկրաչափական ձեւերն ունին. գծեցէք զանոնք։*



## 20. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ 1—18 ԴԱՍԵՐՈՒ

**Գիծեր.** — *Այլեւայլ երկրաչափական գիծեր կան. ուղիղ գիծ, բեկեալ գիծ, կոր գիծ։ Զուգահեռական կ՚ըսուին այն երկու կամ աւելի գիծերը որոնք որչափ երկարին, իրարու չեն հանդիպիր։*

**Անկիւններ.** — *Եթէ ուղիղ գիծ մը հանդիպի ուրիշ ուղիղ գիծի մը եւ կազմէ երկու հաւասար անկիւններ, այն գիծը միւսին ուղղահայեաց է, կ՚ըսուի։ Իսկ այն երկու հաւասար անկիւններէն ամէն մէկը մէկ մէկ ուղիղ անկիւն կը կազմէ։ Ուղիղ անկիւնէն աւելի փոքր անկիւն մը կը կոչուի սուր անկիւն, իսկ աւելի մեծ մը կ՚ըսուի բութ անկիւն։*

**Բազմանկիւններ.** — *Թղթի վրայ եթէ բեկեալ գիծ մը գծէք, այնպէս որ անոր երկու ծայրերը իրարու գան հանդիպին, առաջ կու գայ բազմանկիւն մը։ Եռանկիւնը երեք կողմ եւ երեք անկիւն ունեցող բազմանկիւն մ՚է։ Քառանկիւն մը, չորս անկիւն և չորս կողմ ունեցող բազմանկիւն մ՚է։*

**Շրջանակներ.** — *Շրջանակը կլոր գիծ մ՚է՝ ծայրերը իրարու միացած, եւ որուն ամէն մէկ կէտերը շրջանակին ներսը գտնուած կեդրոնէն հաւասարապէս հեռու են։*

**Մակերեւոյթներ.** — *Թղթին վրայ գծուած բազմանկիւնը մակերեւոյթ մը կը ցուցնէ։ Սեղանին երեսը մակերեւոյթ մ՚է։ Գնտակի մը մակերեւոյթը իր շրջապատն է։ Բոլորակի մը մակերեւոյթը գետնին վրայ անոր բռնած շրջանակաձեւն է։*

**Ծաւալներ.** — *Մարմնի մը բռնած տեղը կը ցուցնէ անոր ծաւալը։ Երկրաչափութեան գլխաւոր ծաւալներն են. պրիզմայ, զուգահեռակողմ, խորանարդ, բուրգ, գլան, կոն, հատեալ կոն, գունդ։*

# ՆԱԽՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## 1. ԴԱՍ. — ՑՈՐԵՆԻ ՄՇԱԿՈՒԹԻՒՆԸ

**1. Ցորենը կը խոշորնայ եւ իր հասկերը կը կազմէ.** — 1. *Գարնան ժամանակ, երբ ցորենը նոր սկսած է բուսնիլ արտերուն մէջ, հողը նստեցնելու համար արտերու վրայէն կ'անցընեն ղողֆար, որ խոշոր գլանաձեւ քար մ'է եւ հողը կը սղմէ, կը նստեցնէ։*

*2. Անկէ յետոյ ցորենը ինքնիրեն կ'աճի, գարնան անձրեւները եւ արեւը շուտով կ'աճեցնեն զայն։ Քիչ ատենէն ցորենին ցօղունը կը բարձրանայ, երկայն տերեւներ կը կախուին անոր քովերէն եւ վերջապէս ցօղունին գագաթը կ'երեւայ պզտիկ հասկ մը, որ յետոյ հատիկներով պիտի լեցուի։*

**2. Հունձքը.** — *Վերջապէս ամառը վրայ կը հասնի, ելլե՛նք սա արտերուն մէջ պտըտինք, ու՛ր է գարնան կանաչութիւնը. հիմա արտերը դեղինցած են, հասկերը հասուն հատիկներով լեցուած են։ Հունձքի ժամանակ է։*



Պատկ. 87 — Հունձք

*Գիւղի մէջ ամէն մարդ հունձքով կը զբաղի, օդը աղէկ է, պէտք է օգուտ քաղել։ Աւասիկ հընձող մշակները որ՝ մանգաղ կամ գերանդի ձեռքերնին·*

*կը հնձեն ցորենը և խուրձ կապելով՝ կը տանին կալերու մէջ կը դիզեն՝ յետոյ ծեծելու (կամնելու) համար։*

---

**1.** 1. Ի՞նչ կ՚ընեն երբ ցորենը սկսի բուսնիլ։ 2. Երբ ցողունը բարձրանայ, ի՞նչ կ՚երեւայ անոր գագաթը։ — **2.** Ե՞րբ կը քաղեն հունձքը։ Ի՞նչ կ՚ընեն ցողունը՝ կտրելէ ետք։

## 2. ԴԱՍ. — ԽՈՏԻ ՀՈՒՆՁՔ

**3. Մարգագետիններ, չոր խոտը.** — *Մարգագետիններու խոտերը կը քաղեն, կենդանիներուն կերցնելու համար։ Այս հունձքը աւելի պարզ, աւելի դիւրին է քան ցորենի հունձքը։*



**Պտկ. 88.** — Արօտատեղին խոտ կը հնձեն

*Մարգագետինները շատ շուտ կ՚աճին՝ երբ շատ անգամ ջրենք զանոնք։ Մարգերը քաղելէ յետոյ, կը թողուն որ արեւու տա՛կ չորնան անոնք, և առաջ կուգայ*

*չոր խոտ։ Այս խոտը խուրձ խուրձ կը կապեն և կամ առանձին խոտի դէզերու վրայ կը դնեն, կամ յարդանոցներու մէջ կը պահեն։*

**Դ.** *Կենդանիներուն ուտելիք խոտը երկու տեսակ է, կա՛մ բնական մարգագետիններէն (չայըր) կ'առնուին անոնք, կա՛մ մասնաւորապէս կը ցանուին արտերու մէջ։ Այսպէս են այլեւայլ տեսակ առուոյտներ (*եօնճա*)․* երեֆնուկ, կորնգան *եւ* ապպաս, *որոնք ցորենի պէս կը ցանուին արտերուն մէջ՝ երկու, երբեմն ալ երեք անգամ կը քաղուին։ Ձիերու եւ կովերու համար ամէնէն ընտիր սնունդն է առուոյտը։*

---

**3.** Ինչո՞ւ մարգագետիններու մէջ խոտ կը մշակեն : Ի՞նչպէս կը քաղեն խոտը : — **4.** Ի՞նչ տեսակ խոտեր կը մշակուին՝ կենդանիներուն կեր ընելու համար :

## 3. ԴԱՍ. — ԽՆՁՈՐԵՆԻ, ԽՆՁՈՐՕՂԻ

**Ա. Խնձորենիներ.** — 1. *Մեր պարտէզներու մէջ ամէն տեղ խնձորի ծառեր կը գտնուին, որոնք մեզի կուտան կարմիր կամ դեղին գոյնով, անուշահոտ, անուշահամ խնձորներ։ Պէտք է յիշենք մասնաւորապէս Վան քաղաքի մօտ Արտամետ գիւղի խնձորները ինչպէս նաեւ Ամասիոյ խնձորները որ նշանաւոր են։ Բայց երկիրներ կան, ինչպէս Ֆրանսա, ուր մեծ դաշտերու մէջ հազարաւոր խնձորի ծառեր կը մշակեն եւ այս խնձորէն կը պատրաստեն տեսակ մը ըմպելիք, որուն «խնձորօղի» կ'ըսուի։ Հոն ուր ցուրտ է և խաղողի այգի չկայ, խնձորօղին կը գործածեն գինիի տեղ։*

2. *Աշնան վերջերը կը տնկեն խնձորի նոր տունկերը, եւ անոնց բոլորտիքի հողը կը փորեն կամ կը հերկեն ու անոնց արմատներուն քովերը աղբ կը զարնեն։*

*Ամառուան վերջերը կը ժողվեն խնձորները՝ քաղելով կամ ձաղկելով։*

**6. Խնձորօղի.** — *Խնձորները դեռ բոլորովին չհասած՝ կը ժողվեն զանոնք եւ՝ չոր տեղ մը լեցնելով՝ կը թողուն որ իրենք իրենց հասուննան։ Այն ատեն կ՚առնեն զանոնք եւ հնձաններու մէջ կը ճմլեն, կը քամեն, անոնց ջուրը կ՚առնեն։ Այս ջուրը խաղողի շիրային պէս է։ Խնձորին ջուրը կը լեցնեն տակառներու մէջ եւ կը թողուն որ խմորուի, այսինքն հասնի։ Քիչ ատենէն զօրաւոր խմելիք մը առաջ կուգայ, այս է խնձորօղին։*



Պատկ. 89 — Խնձորի քաղ

---

5. 1. Խնձորենի մշակելուն երկու նպատակները որո՞նք են։ Ո՞ր քաղաքներ խնձոր կ՚արտադրեն. Ի՞նչ է խնձորօղին։ Ուրիշ ի՞նչ բաներ կը շինուին խնձորէն։ 2. Ի՞նչպէս կը տնկեն խնձորենին եւ ե՞րբ։ Ի՞նչպէս կը քաղեն խնձորը։ — 6. Ի՞նչպէս կը շինեն խնձորօղին, խնձորի բանդակը (րէչէլ), եւայլն։

## 4. ԴԱՍ. — ԽԱՂՈՂԻ ԱՅԳԻՆ

**7. Որթատունկ.** — *Խաղողի տունկին կ՚ըսուի որթ։ Տաք գաւառներու մէջ կ՚աճի որթատունկը եւ ո՛րքան օդը տաք ըլլայ ա՛յնքան աղէկ ու խոշոր խաղող կու-տայ։ Թուրքիոյ մէջ՝ Պոլսոյ, Իզմիրի, Տիարպէքիրի կող-*

մերը ընտիր այգիներ կան։ Խաղողը ընտիր պտուղ մ՚է՝ համեղ, սննդարար, առողջարար եւ շատ օգտակար։

**8. Այգեկութ.** — Աշնան սկիզբները, երբ ա՛լ խաղողները հասունցած են, այգիի տէրերը, մեծ ու պզտիկ, այգիին մէջ կը թափին եւ կը սկսին խաղողի ողկոյզները ժողվել՝ ձեռքով, պզտիկ յօտոցներով ու մկրատներով։ Նախ՝ գոգնոցներու մէջ մաս մաս կը հաւաքեն խաղողը, յետոյ կը լեցնեն խոշոր ուռինիէ կամ եղէգէ կողովներու մէջ։ Այս է այգեկութը (Պատկ. 90)։



**Պատկ. 90.** — Այգեկութ

Այս հաւաքուած խաղողը կը լեցնեն մասնաւոր տակառներու, կարասներու կամ աւլի (*) մէջ, եւ ոտքերով կը կոխեն, կը քամեն որպէս զի խաղողին ջուրը դուրս ելլէ։ Այս ջուրին քաղցու (շիրա) կ՚ըսուի։

(*) Աւլի կ՚ըսուի քառակուսի խորունկ տեղ մը՝ քարէ յատակով ու պատերով. անոր մէջ կը կոխկռտեն խաղողը՝ շիրա շինելու համար։

7. Ի՞նչ է որթը : Ո՞ր երկիրներ որթ կը մշակեն : — 8. Ի՞նչպէս կ՚ընեն այգեկութքը : Ամէն տեղ կողովի մէ՞ջ կը լեցնեն որթատունկէն քաղուած խաղողը: [*Որթ* կը նշանակէ՝ 1. խաղողին տունկը, եւ 2. այդ տունկէն շինուած կողով (*ֆիւֆէ*) : Իսկ *որդ*՝ կը նշանակէ պզտիկ սողացող կենդանի : *Որթ* կը նշանակէ նաեւ հորթ (կովու ձագ)]:

## 5. ԴԱՍ. — ԳԻՆԻ

**9. Գինի.** 1. *Խաղողը քամելէ յետոյ, անոր շիրան կը լեցնեն մեծ տակառներու կամ կարասներու մէջ : Հոն շիրան կը հանգչի եւ քիչ ատենէն կարասի երեսին վրայ պղպջակներ կ՚երեւան, ինչպէս եռացած ջուրին երեսին վրայ : Այս միջոցին շատ վտանգաւոր է երթալ եւ սպասել այն սենեակը ուր դրուած են գինիի կարասները, որովհետեւ անոնցմէ դուրս ելած օդը կրնայ մարդս խեղդել :*



Պատկ. 91 — Տակառներուն մէջ խաղող կը ճմլեն

2. *Իրաւ է որ մեր կողմերը աղէկ գինի շինել չեն գիտեր: Անգամ մը որ շիրան լեցուցին հողէ կարասներու մէջ, մինչեւ կէսը, կը թողուն որ հոն հասնի գինին եւ միեւնոյն կարասէն առնելով կը գործածեն: Բայց ուրիշ երկիրներ, ուր աւելի աղէկ կը շինեն գինին, երբ կարասներու պղպջակները դադրին, անոնց տակը գտնուած ծորակէն գի-*

նին կը լեցնեն աւելի փոքր տակառներու մէջ, որոնց բերանը բաց է, որովհետեւ դեռ ատեն մ'ալ գինին կը շարունակուի եռալ եւ պղպջակ տալ։ Այս անգամ գինին աւելի աղէկ կը զտուի, այսինքն մէջի աւելորդ նիւթերը (մրուր) տակառին տակը կ'իջնեն։

3. Երբ այս անգամ գինին պարզուի, եւ յստակ երեւի, նորէն կը հոսեցնեն զայն ուրիշ տակառի մը մէջ, այնպէս որ գինիին մրուրը նախորդ տակառին մէջ կը մնայ։ Այս վերջինը խմելու գինի է։

---

**Թ.** 1. Ի՞նչ կը գոյանայ ճմլուած խաղողին ջուրէն (*շիրա*)։ Ինչո՞ւ վտանգաւոր է երկար ատեն մնալ այն կարասներուն մօտ որոնց մէջ շիրան կ'եռայ։ 2. Ի՞նչպէս կը պարպեն գինին կարասներէն։ Ինչո՞ւ կարասները մինչեւ բերանը չեն լեցներ։ Հին գինի՞ն թէ նոր գինին լաւ է։ Նոր գինին յստակ կ'ըլլա՞յ։ Կարասին մէջ երբ գինին թողունք, ի՞նչ կը նստի տակը։ 3. Երբ գինին պարզուի, յստակ ըլլայ, ի՞նչ կ'ընեն։

## 6. ԴԱՍ. — ՄՐԳԱՍՏԱՆ

**10.** Պտղատու ծառերը յօտել կամ էտել։ — Գարնան ժամանակ դիտեցէք պտղատու ծառերը, օրինակ տանձենի մը, խնձորենի մը, պիտի տեսնէք որ երկու տեսակ ծիլեր կ'երեւան անոնց վրայ, մէկը նեղ ու սրածայր, որմէ առաջ պիտի գան ճիւղեր ու տերեւներ, միւսը խոշոր եւ կլորաձեւ՝ որմէ առաջ պիտի գայ պտուղը։ Որպէս զի այս ծառերը շատ պտուղ տան եւ պտուղները շուտով հասուննան, ծառերը կը քշտեն։

Պտղատու ծառերը յօտել կամ էտել, կը նշանակէ անոնց աւելորդ մասերը կտրել որ միւս մասերը շուտ շուտ աճին։ Ասոր համար աշնան վերջերը կը կտրեն մինակ այն ծիլերը, որոնք ծառի ճիւղեր պիտի կազմէին. իսկ պտղատու ծիլերուն ձեռք չեն դպցներ։



**Պատկ. 92** — Յօտուած պտղատու ծառերու շարք

*Այսպէս կը յօտեն շատ մը պտղատու ծառեր. ինչպէս խնձորենի, տանձենի, ծիրանենի, դեղձի, եւայլն։*

---

**10.** Պտղատու ծառերուն երկու տեսակ ծիլերը որո՞նք են։ Ինչո՞ւ համար կը յօտեն պտղատու ծառերը։ Ի՞նչ է յօտելու գործողութիւնը եւ ի՞նչպէս կը յօտեն։ Յօտուած ճիւղերը ինչո՞ւ կը կապեն։

## 7. ԴԱՍ. — ԲԱՆՋԱՐԵՂԷՆՆԵՐ

**11. Բանջարանոցի մշակութիւն. բանջարներ.** — *Պըզտիկ հող մը ուր կը մշակեն բանջարեղէններ, հում հում ուտելիք զանազան կանանչեղէններ եւ անուշահոտ ու զարդի ծաղիկներ՝ այդ տեղը ընդհանրապէս բանջարանոց կ'ըսուի եւ այդ աշխատութիւնը բանջարանոցի մշակութիւն կը կոչուի։ Այս բոյսերը աւելի աղէկ կ'աճին եւ առոյգ կ'ըլլան, եթէ հողին հոգ տարուի, եթէ քրքրեն զայն եւ աղբեն։ Բոլոր բանջարեղէններու մշակութիւնը մէկ կերպ չէ։ Քանի մը օրինակ յիշենք.*

**12. Սեխպղին.** — *Թէ՛ աշնան վերջերը, թէ՛ գարնան սկիզբները՝ կարելի է ցանել սեխպղինը։ Ատոր համար հողը հերկելէ յետոյ բարակ ակօսներ կը բանան անոր մէջ, սերմերը ակօսներու մէջ կը դնեն և հողով կը ծածկեն։ Երբ սեխպղինը կը կանաչնայ, անոր բոլորտիքի աւելորդ խոտերը կը ժողվեն որ սեխպղինը աղէկ աճի։*

**13. Սոխ.** — *Սոխը սովորաբար կը ցանեն շատ գործածուած հողերուն վրայ։ Ատոր համար, նախ արտին հողը աղէկ մը կը նստեցնեն, յետոյ սերմը վրան կը ցանեն և զայն կը ծածկեն աղբով խառնուած բարակ հող մը։*

**14. Հազար.** — *Հազարը (մարուլ) կը ցանեն իր տերեւներուն համար։ Տեսակ տեսակ հազարներ կան, ոմանք գարնան սկիզբները կը ցանուին, ոմանք ամառը։*

---

**11.** Ի՞նչ է ծաղկեմշակութիւնն ու բանջարամշակութիւնը: — **12.** Ի՞նչպէս կը մշակեն սեխպղինը: — **13.** Սո՞խը: — **14.** (Հազա՞րը:



## 8. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԱՄՍՈՒԱՆ

**Ցորենի մշակութիւնը.** — *Արտը կը հերկեն, կը ցանեն, կը ցաքանեն, եւ կը թողուն որ ցորենը աճի։ Երբ հասկերը հասուննան, կը քաղեն։*

**Խոտեղէններու մշակութիւնը.** — *Խոտերը թէ բնական արօտատեղիներէն կը ժողվեն եւ թէ մասնաւոր մարգագետիններու մէջ կը մշակեն։ Առուոյտները ամէնէն ընտիր խոտը կու տան։ Զանոնք ցորենի պէս կը ցանեն, կը ջրեն եւ աճելէ յետոյ, մէկ երկու անգամ կը հնձեն։ Հնձուած խոտը կը թողուն որ արեւու տակ չորնայ, յետոյ խուրձ կը կապեն։ Ձիերու եւ կովերու համար ամէնէն աղէկ սնունդն է առուոյտը։*

**Խնձորենիներ, խնձորօղի.** — *Երկիրներ կան, ինչպէս Ֆրանսա, ուր մեծ քանակութեամբ խնձորենի կը մշակեն եւ խնձորէն կը պատրաստեն տեսակ մը ըմպելիք, խնձորօղի, որ գինիին տեղը կը բռնէ։*

**Որթատունկ, գինի.** — *Թուրքիոյ շատ մը գաւառներուն մէջ բազմաթիւ այգիներ կան, որ ընտիր խաղող կու տան։ Խաղողը երբ կը հասուննայ, այգեգութ կ'ընեն եւ ժողվուած խաղողը կը քամեն, անոր շիրան կարասներու մէջ կը լեցնեն, եւ կը թողուն որ գինի ըլլայ։*

**Մրգաստան եւ բանջարանոց.** — *Տեղ մը, ուր պտղատու ծառեր կը մշակեն, մրգաստան կ'ըսուի, իսկ հոն ուր ուտելու բանջարեղէններ կը մշակեն, բանջարանոց կը կոչուի։ Հողերն աղբելու եւ փորփրելու է։*

# ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ



## 1. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ

### Բառ, Նախադասութիւն

**Բառ, վանկ, գիր.** — *Երբ ձայն մը կամ շատ մը ձայներ կը հանենք՝ որոնք իմաստ մը կուտան, բառ մը զրուցած կ'ըլլանք։*

*Բառ մը մէկ կամ մէկ քանի վանկով կը կազմուի։*

*Վանկերն ու բառերը կը ձեւանան գիրերով։*

*Ձայնաւոր են այն գիրերը որ առանձին կրնան հնչուիլ։*

*Ձայնաւոր են ա, ե, է, ը, ի, ո, ւ, օ։*

*Բաղաձայն են այն գիրերը որ ձայնաւորի մը հետ կրնան հնչուիլ։*

*Բաղաձայն գրերն են բ, գ, դ, զ, թ, ժ, լ, խ, ծ, կ, հ, ձ, ղ, ճ, մ, յ, ն, շ, չ, պ, ջ, ռ, ս, վ, տ, ր, ց, փ, ք, ֆ։*

**Նախադասութիւն.** — *Տէրբայի(*) կամ ենթակայ, բայ եւ ստորոգելի միանալով՝ կը կազմեն նախադասութիւն։*

*Տէրբային կը ներկայացնէ այն էակը կամ իրը որուն վրայ բան մը կ'ըսուի, կամ գործը կը կատարէ։ Տէրբային իմաստը ամբողջացնող բառը կը կոչուի Տէրբային խնդիրը։*

*Բայ կը նշանակէ գործողութիւն կամ վիճակ։ Շատ անգամ Ստորոգելին ալ բային միացած կ'ըլլայ։*

*Ստորոգելի այն բառն է որ Տէրբային ինչպէս ըլլալը կը յայտնէ։ Ստորոգելիին իմաստը լրացնող բառն ալ կը կոչուի Ստորոգելիին լրացուցիչը։*

(*) Տէրբային կը կոչուի նաեւ Անուն բայի։



## 2. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**1.** Էջ 1ի խօսակցութիւնը (*Եսասէր ըլլալու չէ*) կարդացէք եւ որոշեցէք Ձայնաւոր ու Բաղաձայն գրերը:

### ԻՄ ՓԻՉՈՆ ԿԱՏՈՒՍ

*Ես ունիմ կատու մը, պզտիկ սիրուն ու քնքուշ։ Անունն է Փիչոն։ Գոյնը վարդագոյն է։ Խատուտիկ աչքերը կը փայլին անուշ նայուածքով մը։ Երկայն պոչ մ'ունի. մորթը՝ փափուկ է, նստուածքը՝ շնորհալի։ Կ'ուզէ որ զինքը սիրեմ ու փայփայեմ։ Մանաւանդ բան մը կերած ատենս՝ քովէս չի զատուիր։ Արագ ու ծիր քայլերով կ'ելլէ մինչեւ բարձր տանիքին վրայ. Յանկարծ թեթեւ ոստում մը կ'ընէ, քովի տան ցիւին վրայ կը ցատկէ։ Գիշերները՝ Փիչոնին աչքերը կը վառին ու երբ քունը գայ, կակուղ բազմոցին վրայ լայնկէկ մը տեղաւորուելով՝ անուշ անուշ կը մրափէ։*

**2.** Վերի հատուածին մէջ ո՞ր բառերը Գոյական են, որո՞նք Ածական են եւ որո՞նք Բայ:

**3.** Որոշեցէք Նաեւ Տէրբայի, Բայ եւ Ստորոգելի:

**4.** Հետեւեալ խօսքերուն մէջ, ո՞ր բառերը Տէրբայի լրացուցիչ են, եւ ո՞ր բառեր Ստորոգելիի լրացուցիչ են:

1. *Աս որթերուն խաղողը անուշ գինի կուտայ։* — 2. *Գեղին սափրիչը շատ յաճախորդ ունի։* — 3. *Դատաւորին վճիռը արդար է։* — 4. *Հանրօգուտ Շինութեանց Նախարարը խճուղիներուն Նորոգութիւնը հրամայեց։* — 5. *Հարուստ կիները վարպետ դերձակուհիներ կ'ունենան։*

**5.** Սա բառերուն նմանաձայնները գտէք եւ դէմ առ դէմ գրեցէք.

*Գող, կեռ, հարկ, դանակ, կառք, յարդ, համր, թաղ, թիակ, քայլ, փոխ, հոյլ, փուռ, դաս, հեռու, յառաջ, մարդ, դատ, թեւ, ցօղ, որդ, զամել, բակ, յոյն։*

**6.** Պահանջուած բառերը քով քովի եթէ շարէք, Նախադասութիւն մը պիտի կազմուի.

1. *Անձնական Դերանուն, Ա. Դէմք, Յոգն. Ուղղական։* — 2. *Կաւէ Հասարակ անունին Եզ. Գործիականը։* — 3. *Ճամբորդել Բային Սահմ. Ներկայ, Յոգն. Ա. Դէմքը։* — 4. *Ցամաք Հաս. անունին Եզ. Սեռականը։* — 5. *Նախադրութիւն մը (խօսքին յարմար)։* — 6. *Շաղկապ մը՝ Համադրութիւն ցուցնող։* — 7. *Ծով Հաս. անունին Եզ. Սեռականը։* — 8. *Նախադրութիւն մը։* — 9. *Ճամբորդել Բային Սահմ. Ներկայ Յոգն. Գ. Դէմք։* — 10. *Մակոյկ, նաւ, նաւակ, շոգենաւ, ցռկանաւ, առագաստանաւ, բառերուն Յոգնակի Գործիականը։*

---

**Ծանօթ.** — *Ուսուցիչը համանման հնարքներով գիւտեր եւ գործնական հրահանգներ ընել Թող տայ։ Այս կարգի վարժութիւններուն արդիւնքը անհամեմատ մեծ ու տպաւորիչ է։*



## 3. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱԴԱՐՁ

### Անուն կամ Գոյական (Ա. Մաս Խօսքի)

**Անուն** *կամ* **Գոյական** *է այն բառը որ անձ, կենդանի կամ իր կը նշանակէ։*

*Հասարակ անունը միեւնոյն տեսակէ եղող ամէն բաներու ալ կը յարմարի։ Իսկ Յատուկ անունը միեւնոյն տեսակէ եղող անձերէն կամ իրերէն մէկ հատին կամ մէկ խումբին կը պատշաճի։*

**Անուններուն թիւը.** — *Եզակի անունը մէկ անձ, մէկ կենդանի կամ մէկ իր կը ցուցնէ։ Յոգնակի անունը շատ անձ, շատ կենդանի կամ իր կը ցուցնէ։*

*Անուն մը Յոգնակի ընելու համար ծայրը եր կը կցենք եթէ միավանկ է. ներ կը կցենք եթէ բազմավանկ է։*

**Անուններուն հոլովը.** — *Եզակի թէ Յոգնակի անուններուն ծայրը կերպ կերպ կը փոխուի, սոր կ'ըսենք հոլով։*

*Հոլովը վեց է. Ուղղական, Հայցական, Սեռական, Տրական, Բացառական եւ Գործիական։*

*Անուն մը պարզ վիճակի մէջ Ուղղական է. ի կամ ու աւելցնելով կը չինուի Սեռական եւ Տրական. է աւելցնելով կը չինենք Բացառական, ով աւելցնելով՝ կ'ըլլայ Գործիական. Հայցականն ալ Ուղղականին պէս է։*

*Այս ի, ու, ով գիրերը կ'ըսուին Հոլովանիշ տառեր։*

**Զարտուղի եւ անկանոն հոլովումներ.** — *Անուններ ալ կան որ ուրիշ կերպով կը հոլովուին։*

**Յօդ.** — *Անունները երբ որոշ մտքով գործածուին, իրենց ծայրը կը կցենք ս, դ, ն (կամ ը) գիրերը որոնք Յօդ են:*

*Ս, Դ, Ն կամ Ը գիրերուն Հաւաքական եւ Յոգնակի ձեւերն են նիս, նիդ, նին որոնք կը դրուին Գոյականներուն ծայրը, երբ անոր պատկանող Ստացական կամ Ցուցական ածականը ջնջուած է:*

## 4. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**7.** *Անձ* նշանակող բառերուն տակը գիծ քաշեցէք.

*Մեր բոլոր ուժով սիրելու ենք մեր հայրն ու մայրը, մեր քոյրն ու եղբայրը, մեր պապն ու հանին, քեռին ու հօրեղբայրը, մեր հօրաքոյրը եւ մօրաքոյրը:*

**8.** *Իր* նշանակող բառերուն տակը գիծ քաշեցէք.

*Դպրոցին մէջ կը տեսնեմ դուռ, պատուհան, սեղան, նստարան, աթոռ, գրասեղաններ, գրատախտակ, քարտէս, եւայլն, — Կաղամբը կանկառը, խաւարծիլը (ռավէնտ), ծնեբեկը, շոմինը (սպանախ) լոլիկը, սըմբուկը (պատինճան), դդումը բանջարեղէններ են:*

**9.** Որոշեցէք Յատուկ եւ Հասարակ անունները.

1. *Մաթուսաղա ապրեցաւ ինը հարիւր յիսուն տարի:* — 2. *Գամիյլ Ֆլամարիօն մեծ աստեղագէտ է:* — 3. *Սոկրատ՝ Յոյն մեծ փիլիսոփան՝ ապրեցաւ Քրիստոսէ հինգ դար առաջ:* — 4. *Ս. Բարսեղ, Ոսկեբերան, Սահակ, Մեսրոպ Եղիշէ՝ Եկեղեցական հայրեր են:* — 5. *Դաւիթ, Սամուէլ, Եզեկիէլ եւ Յովնան մարգարէներուն կեանքը կը կարդանք Ս. Գըրքին մէջ:*

**10.** Վերի 7. եւ 8. հրահանգներուն մէջի անունները Յոգնակի ըրէք:

**11.** Սա անունները Եզակի ըրէք.

*Դռներ, հարսներ, մատներ, ոտքեր, աչքեր, ներկեր, տէրեր, լուցկիներ, ջորիներ, անձեղներ, տարիներ, դարեր:*

**12.** Գտէ՛ք պահանջուած տեսակով ու ձեւով բառերը եւ իրարու քով շարեցէք.

1. *Հական Դերանուն Ա. Դէմք, Եզակի Ուղղականը:* —2. *Ածանցուած Յատուկ անունին Եզ. Բացառականը:* — 3. *Խնդրեալ Ներգործական Բային*

*Սահմ. Եղանակ, Ներկայ Ժամանակ Եզ. Ա. Դէմքը։ — 4. Պատճառ (*) նշանակող Շաղկապ մը։ — 5. Ստացական Ածական՝ Ա. Դէմք Ներկայացընող։ — 6. Մայր բառին Եզ. Ուղղականը՝ ու Դիմորոշ Յօդով։ — 7. Քանակութիւն ցուցնող Մակբայ մը։ — Ապրիլ Բային Սահմանական Եղանակ, Եզակի Գ. Դէմքը։*

**13.** Հարցումներուն պատասխանեցէք՝ Թ. Գրակ, էջ 60, Դաս. 8 ին համեմատ.

*1. Էշ մը ինչ կը տանէր։ — 2. Ե՞րբ սահեցաւ ոտքը։ — 3. Ո՞ւր ինկաւ։ —. Ցամաք ելլելուն պէս ինչ զգաց։ — 5. Ի՞նչ ըսաւ ինքնիրեն։*

*6. Ուրիշ օր մը ինչ պատահեցաւ։ — 7. Այս անգամ ինչ կար վրան։ — 8. Ի՞նչպէս էր բեռը։ — 9. Իշուկը ինչ ուզեց։ — 10. Ի՞նչ ըրաւ։ — 11. Ի՞նչ եղաւ սպունգը։ — 12. Ի՞նչ պիտի ըլլար խեղճ իշուկը։ — 13. Ի՞նչպէս հասաւ առուին եզերքը։ — 14. Ի՞նչ դրաւ միտքը — 15. Ի՞նչ կը հետեւի այս առակէն։*



## 5. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ (Շար.)

### Ածական (Բ. Մաս Խօսքի)

**Ածական.** — *Ածականը բառ մ'է որ Գոյականին քով կը դրուի՝ անոր ի՛նչպէս ըլլալը ցուցնելու կամ անոր իմաստը որոշելու համար։*

*Ածականը որ Էական Բային քով կը դրուի, Ստորոգելի է նոյն բային Ենթակային։*

*Որակական է Ածականը եթէ կրնանք անոր քով դնել մարդ կամ բան բառերը։*

*Ածականը թիւ եւ հոլով չունի՝ եթէ Գոյականի հետ գործածուած է։*

*Գոյականաբար գործածուած Ածականը, ճիշդ Գոյականի պէս, կ'ունենայ թիւ եւ հոլով, եւ կ'ըլլայ Տէրբայի, Սեռի կամ Բնութեան խնդիր։*

(*) Պատճառ նշանակող Շաղկապ են, որ, որպէս զի, վասն զի, ինչու որ, եւայլն։

**Որոշիչ ածական.** — *Որակական ածականէն զատ կան չորս տեսակ ածականներ, որոնք Գոյականին ինչպէս ըլլալը չեն ցուցներ, այլ անոր իմաստը կը ճշդեն, կ'որոշեն:*

*Որոշիչ ածական են.*

1. Ցուցական ածականը. — *Այս, սա, աս, այդ, տա, ատ, այն, նա, ան:*

2. Ստացական ածականը. — *Իմ, քու, իր, անոր, մեր, ձեր, իրենց, անոնց:*

3. Թուական ածականը. — *Որ թիւ, կարգ, չափ կը ցուցնէ. մէկ, երկու կամ երկուք, երեք, չորս, հինգ, եւայլն: Առաջին, երկրորդ, երրորդ, չորրորդ, հինգերորդ, եւայլն, Բաշխական թուական կը կոչուին՝ մէյմէկ, երկերկու,. երեքական, չորսական, եւայլն: Կայ նաեւ չափ ցուցնող Թուական ածական. մէկնոց, երկուքնոց, երեքնոց, չորսնոց, եւայլն:*

4. Անորոշ ածականը *որ Գոյականին իմաստը տարտամ, անստոյգ, մասնակի կերպով մը կ'որոշէ.* — *Քանի մը, սանկ, ատանկ, անանկ, այսքան, այդքան, այսինչ, այնինչ, ի՞նչպէս, ո՞ր, ի՞նչ, եւայլն:*

## 6. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**14.** Որակական ածականներուն տակ գիծ քաշեցէք.

*Սոխակը, որ կ'ըսուի նաեւ պլպուլ, պզտիկ՝ փափկիկ թռչուն մ'է։ Փայլուն փետուրներ չունի։ Գորշ ու անշուք փետուրներով ծածկուած է՝ թուխ գոյնով։ Կ'ըսեն թէ իր բոյնը շինելու մէջ վարպետ չէ։ Միայն երգել գիտէ, բայց՝ երբ երգէ՝ ամէն բան կը լռէ՝ լսելու համար անոր անուշ ճռուողումն ու գողտրիկ գեղգեղը՝ մերթ աշխոյժ, զուարթ ու բարձր, մերթ մեղմ, ծանր ու մելամաղձոտ։*

**15.** Հոլովեցէք. — 1. *Աս տղան, ատ ըսածդ, ան օրը։* — 8. *Իմ բաղդս, քու հաշիւդ, անոր գերեզմանը։*

**16.** Սա բառերն յոգնակի ըրէք՝ (Ածականներն ալ).

*Իմ պարտքս, քու պատիժդ, անոր հոգին, իմ իրաւունքս, քու լացդ, անոր սէրը, իր խօսուածքը։*

**17**. Նոյն բառերը մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք ։

**18**. Սա բացարձակ Թուական ածականները գրով գրեցէք.

2, 3, 4, 14, 18, 27, 39, 41, 55, 60, 100, 1000։

**19**. Սա Դասական Թուական ածականները գրով գրեցէք.

$1^{o}$., $2^{o}$., $3^{o}$., $4^{o}$., $5^{o}$., $6^{o}$., $7^{o}$., $8^{o}$., $9^{o}$., $10^{o}$., $11^{o}$., $12^{o}$., $13^{o}$.։

**20**. Հոլովեցէք. — *Մէկ, երկու, երեք, չորս, երեսուն։*

**21**. Կէտերուն տեղ դրէք պատշաճ բառերը.

1. *Բնութեան մէջ գտնուող բաները կը բաժնուին ... մեծ կարգերու կամ խումբերու։* — 2. *Շնչաւոր էակները կը կոչուին ....։* — 3. *Գետնէն բուսնող, աճող նիւթերը կ'ըսուին ....։* — 4. *Հողին մէջ գտնուող քրէական նիւթերը կ'ըսուին ....։* — 5. *Արծաթն ու երկաթը ... են։* — 6. *Կաղնին ու եգիպտացորենը ... են։* — 7. *Կուզն ու աղուէսը ... են։* — 8. *Այն կենդանիները որ ոսկոր ունին, ... կը կոչուին՝ ինչպէս ....։* — 9. *Այն կենդանիները որ ծիծ (ստինք) ունին, ... կը կոչուին, ինչպէս ....։* — 10. *Այն կենդանիները որոնց մարմինը կակուղ է, ոսկոր չունին, ... կը կոչուին, ինչպէս ....։*

**22**. Թ. Գրակ էջ 62, Հրահանգ 34ի բառերուն նման ուրիշ բառեր ալ գտէք (զո՛նէ մէյմէկ հատ) Նախադաս ու Յետադաս մասնիկներով ։



## 7. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ (*Շար.*)

### Դերանուն (*Գ. Մաս խօսքի*)

**Դերանուն** *է այն բառը որ անուանին տեղ կը դրուի։ Դերանուններն ունին Դէմք, Թիւ, Հոլով։*

**Էական դերանունները** *երեք դէմքերը կը ցուցնեն.*

*Ա. Դէմք՝ Ես, իս, իմ, ինծի, ինձմէ, ինձմով։ Մենք, մեզ, մեր, մեզի, մեզմէ, մեզմով։*

*Բ. Դէմք՝ Դուն, քեզ, քու, քեզի, քեզմէ, քեզմով, Դուք, ձեզ, ձեր, ձեզի, ձեզմէ, ձեզմով։*

*Գ. Դէմք՝ Ան կամ անիկա, անոր, անկէ կամ անորմէ, անով։ Անոնք, անոնց, եւայլն։ Ինք, զինք, իրեն, իրմէ, իրմով, իրենք, իրենց, եւայլն։*

**Ծանօթ.** — *Շատ անգամ Հայցականներուն սկիզբը զ գիրը կը դրուի՝ Ուղղական հոլովէն հետ չշփոթելու համար։ Այսպէս՝ թէ՛ Անուններուն եւ թէ՛ Դերանուններուն համար։ Այս զ գիրը Հայցականի հոլովանիշ է գրաբարի մէջ։*

**Ցուցական դերանուններն են.**

*Ա. Դէմք՝ Այս, աս, ասիկա, սա — ասոնք։*

*Բ. » Այդ, ատ, ատիկա, տա — ատոնք։*

*Գ. » Այն, ան, անիկա, նա — անոնք։*

**Ստացական դերանուններն են.**

*Ա. Դէմք՝ Իմս կամ իմինս, մերը կամ մերինը։*

*Բ. » Քուկդ կամ քուկինդ, ձերը կամ ձերինը։*

*Գ. » Անորը կամ անորինը, իրը կամ իրենը, անոնցը կամ իրենցը, եւայլն։*

**Յարաբերական դերանուն** *է* **որ**, *եւ այն բառը որուն կը յարաբերէ, կ'ըսուի Յարաբերեալ։*

*Յարաբերական դերանունը այսպէս կը հոլովուի.*

*Որ, զոր, որուն, որու, որմէ, որով։ Որոնք, զորոնք կամ զորս, որոնց, որոնցմէ, որոնցմով։*

**Անորոշ դերանուն** *են այն բառերը որ անուններուն տեղ կը դրուին՝ անորոշ գաղափար մը տալով իրենց ներկայացուցած անձերուն կամ իրերուն վրայ։ Ամենքը, մէկը, միւսը, ոչ մէկը, իրար, քանի մը, ինչ որ, ամէն մէկը, ոչինչ, ուրիշը, միեւնոյնը, ո՞վ, ո՞րը, ի՞նչը, ո՞րչափը։*

## 8. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**23.** Դերանուններուն տակէն գիծ քաշեցէք.

1. *Տղաս, դուն պէտք է սիրես ծնողքդ։ Անոնք քեզի համար շատ նեղութիւն քաշած են. իրենց պէտք է նուիրես սիրտդ, ու ջանաս անոնցմէ սիրուիլ։* — 2. *Տեսէք սա պտուղները. ասիկա պիտի տամ ձեզմէ ամէնէն խելօքին։ Անիկա ալ պիտի տամ անոր որ աղէկ կարդաց։* — 8. *Ահա երկու*

*գիրք. ասիկա իմս է, անիկա ալ քուկինդ է։ — 4. Կաղամար չունիս. անորինը առ, որ աւելի մեծ է։ — 5. Դուք ձերիններէն գո՞հ էք։ — 6. Բարի աղջիկն ան է որ իր մօրը կ'օգնէ. աւլուածք, կարկտուք, լուացք կ'ընէ։ — 7. Լռէ. մէկը եկաւ, տեսնենք ո՞վ է։ — 8. Ի՞նչ է ուզածդ։ — Ոչինչ։*

**24.** Որոշեցէք թէ նոյն Դերանունները ի՞նչ պաշտօն կը վարեն խօսքերուն մէջ. (Տէրբայի՞ են, Սեռի խնդի՞ր են, Բնութեան խնդի՞ր են):

**25.** Ցուցական դերանունները որոշելով՝ ըսէք թէ ո՞ր բառերուն տեղը կը բռնեն.

1. *Այս զամբիկը իմ հօրս է, ան ալ իմինս։ — 2. Աս ձիերը աւելի աշխոյժ են քան ատոնք։ — 3. Անոնցիններուն խոտ կերցուցէք, ատոնք ալ ախոռը քշեցէք։ — 4. Մինչեւ որ պարտէզ մը գնէք, ասիկա մշակեցէք։*

**26.** Յարաբերականներն ու Յարաբերեալները որոշեցէք.

1. *Տրուօ, որ հացագործի մը զաւակ է, Ֆրանսացի զօրավարներուն մէջ նշանաւոր եղաւ։ — 3. Ֆրանքլին, որուն անունը լսած էք, շանթարգելին հնարիչն է։ — 3. Յովհաննա տ'Արք, որ հիմա իբրեւ սրբուհի կը պաշտուի, Անգղիացիները վռնտեց Ֆրանսայէն։*

**27.** Զատեցէք Անորոշ ածականներն ու Անորոշ դերանունները.

1. *Մէկու մը հետ կը խօսիս։ — Այո։ — 2. Ի՞նչ բանի վրայ կը խօսէիր։ — Ոչինչ։ — 3. Իրար սիրեցէք։ — 4. Ամէն գիւղ, ամէն քաղաք իր սովորութիւններն ունի։ — 5. Միւս տղան ալ կանչէ։ — 6. Ուրիշ մարդ չեմ ուզեր։ — 7. Ի՞նչ գոյներ ունի ծիածանը։ — 8. Ոչինչ խօսքեր մի՛ զրուցեր։ — 9. Ալ չկա՞յ, ամէնը ասո՞նք են։ — 10. Միւսները որու պիտի տաս։ — 12. Ուրիշին ըրէք այն բանը որմէ կ'ախորժիք։ — 13.* Ո՞րը գիտես։

---

## 9. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ (*Շար.*)

### Բայ (*Դ. Մաս Խօսքի*)

**Թիւ ու Դէմք.** — *Բայը կ'ըլլայ Եզակի կամ Յոգնակի թիւով, եւ ամէն Թիւի համար ունի երեք Դէմք։*

*Ես՝ Եզակի Ա. Դէմքի համար, Դուն՝ Եզակի Բ. Դէմքի համար, Ան եւ ինք Եզակի Գ. Դէմքի համար։ Մենք՝ Յոգնակի Ա. Դէմքի համար, եւայլն։*

**Բային լրացուցիչները** — *Սեռի խնդիրը գտնելու համար, զո՞վ, ի՞նչը հարցումները դնելու է Բային քով։ Բնութեան խնդիրն ալ կը գտնենք սա հարցումներով. որո՞ւ, որմէ՞, որո՞վ, որո՞ւ հետ, որո՞ւ համար կամ ի՞նչ բանի, ի՞նչ բանէ, ինչո՞վ, ի՞նչու, ի՞նչպէս, եւայլն։*

**Բային ժամանակները.** — *Ժամանակը կը ցուցնէ թէ գործ մը կը կատարուի, կատարուած է կամ պիտի կատարուի։ Երեք ժամանակ կայ.*

1. *Ներկայ որ կը ցուցնէ թէ գործը կը կատարուի խօսուած միջոցին։*

2. *Անցեալ որ կը ցուցնէ թէ գործը առաջուց կատարուած է։*

3. *Ապառնի որ կը ցուցնէ թէ գործը պիտի կատարուի յետոյ։*

**Բային եղանակները.** — *Եղանակը ցոյց կուտայ գործողութեան ձեւը, կերպը։ Եղանակը չորս է։*

1. *Սահմանական որ կը հաստատէ։*

2. *Հրամայական որ պատուիրելու ձեւ ունի։*

3. *Ստորադասական որ կը ցուցնէ թէ գործ մը ուրիշ գործէ մը կախում ունի։*

4. *Անորոշ եղանակ են Բային Աներեւոյթն ու երեք Դերբայները։ Անորոշ եղանակը Թիւ ու Դէմք չունի։*

**Երեք Լծորդութիւններ.** —*Բայ խոնարհել՝ կը նշանակէ նոյն բային Եղանակներն ու ժամակները ըսել կամ գրել։*

*Երեք Լծորդութիւն կայ.*

*Ա. որուն Աներեւոյթը ել կը վերջաւորի։*

*Բ. » » իլ »*

*Գ. » » ալ »*

*Կայ նաեւ ուլ վերջաւորող բայերու ձեւ մը որ քիչ կը գործածուի։*

## 10. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**28.** Երեք դէմքի բայերը զատ զատ գրեցէք.

*Կը դիտեմ, կ'անցնին, կ'ընթեռնի, կ'առնէ, կը գրօսնեն, կ'աշխատինք, կը բարեւէք, կ'ազդարարեն, կը նշմարուէին, կը զմայլէիր, կը գործածենք, պիտի ներէին, աղօթեցէք, կը դիզուի, պիտի մնայ։*

**29.** Նոյն բայերուն թիւը որոշեցէք:

**30.** Սա խօսքերուն մէջ ո՞ր բառերը սեռի խնդիր են.

1. *Բժիշկը հիւանդ կը դարմանէ։* — 2. *Ջաղացքը ցորեն կ'աղայ։* — 3. *Խնձորենին խնձոր պիտի տայ։* — 4. *Արտինէ իր ժամանակը լաւ կը գործածէ։* — 5. *Մեր անձը խնամելու ենք։* — 6. *Վարձակալը վճարեց իր պարտքը։* — 7. *Որսորդը նապաստակ մը տեսաւ,* — 8. *Հաց պիտի ուտեմ։*

**31.** Գտէք բնութեան խնդիրները.

1. *Դաշտին մէջ ձի մը կը քաշէր երկրագործին սայլը,* — 2. *Երկինքէն անձրեւ ու կարկուտ կ'իջնեն։* -- 3. *Անձրեւը օգտակար է բոյսերուն։* — 4. *Դարբինը պատին մէջ երկաթ վանդակ մը դրաւ։* — 5. *Վանդակէն չորս թռչուններ թռան եւ ծառին վրայ թառեցան։*

**32.** Վերի հրահանգներուն մէջ բայերը ի՞նչ ժամանակ են:

**33.** Հետեւեալ խօսքերուն մէջ բայերը ի՞նչ եղանակ են.

1. *Աղջիկդ իր քոյրին քով ղրկէ։* — 2. *Տղադ ես պիտի հոգամ։* — 3. *Կ'ուզեմ որ զիս սիրես։* — 4. *Ջուրը գայ՝ ջաղացքն աղայ, խենթն ուտէ՝ ելլէ խաղայ։* — 5. *Ինծի քառսուն փարա տուր՝ կ'օգտէ։*

**34.** Նոյն հրահանգը յոգնակիի փոխեցէք:

**35.** Սա բառերուն հականիշը գտէք.

*Գիշեր, լուսաւոր, ոտք, կեանք, սատանայ, ծով, երիտասարդ, դժոխք, մեղաւոր, սուղ, գեղեցիկ, հարուստ, ճերմակ, տրտում, կարծր, մեծ, թըթու, լեցուն, հոգի, պաղ, ծոյլ, կանուխ, ետք, շատ, այր, վար, արագ։*

**36.** Ի՞նչ հոլով կ'ըլլան սա հարցումներուն պատասխանող բառերը.

1. *Ո՞վ, ի՞նչը։* 2. *Որո՞ւն, ի՞նչ բանին։* 3. *Որո՞ւ, ի՞նչ բանի։* 5. *Զո՞վ. ի՞նչ բանը.* 5. *Որմէ՞, ի՞նչ բանէ։* 6. *Որո՞վ, ի՞նչ բանով։*

**37.** Յոգնակի անուններուն վեց հոլովները գտնելու համար ի՞նչ հարցումներ ընելու է՝ գրեցէք զատ զատ:



## 11. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱԲԱՂ (*Շար.*)

### Երեք Լծորդութեանց վերջաւորութիւնները

**Սահմանական եղանակ Ներկայ**

| Ա. Լծորդ. | | Բ. Լծորդ. | | Գ. Լծորդ. | |
|---|---|---|---|---|---|
| *եմ* | *եմք* | *իմ* | *իմք* | *ամ* | *ամք* |
| *ես* | *եք* | *իս* | *իք* | *աս* | *աք* |
| *է* | *են* | *ի* | *ին* | *այ* | *ան* |

**Անցեալ անկատար**

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *էի* | *էինք* | *էի* | *էինք* | *այի* | *այինք* |
| *էիր* | *էիք* | *էիր* | *էիք* | *այիր* | *այիք* |
| *էր* | *էին* | *էր* | *էին* | *ար* | *ային* |

**Անցեալ կատարեալ**

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *իցի* | *եցինք* | *եցայ* | *եցանք* | *ացի* | *ացինք* |
| *եցիր* | *եցիք* | *եցար* | *եցաք* | *ացիր* | *ացիք* |
| *եց* | *եցին* | *եցաւ* | *եցան* | *աց* | *ացին* |

**Բացարձակ ապառնի**

(*Սահմանական եղանակ Ներկային պէս*)

**Անկատար ապառնի**

(*Սահմանական եղանակ Անկատարին պէս*)

**Հրամայական եղանակ Ներկայ եւ Ապառնի**

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | *եմք* | | *իմք* | | *ամք* |
| *է՛* | *եցէք* | *է* | *իցէք* | *ա* | *ացէք* |

**Ստորադասական եղանակ Ներկայ եւ Անկատար**

(*Սահմանական եղանակ Ներկային ու Անկատարին պէս*)

**Անորոշ եղանակ**

*ել, ող, ած, ելու* *իլ, ող, ած, ելու* *ալ, ացող, ացած, ալու*



## 12. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**38.** Բայերուն Ածողութիւնը որոշեցէք.

*Հովիւին շունը, որ հօտերուն կը հսկէ, խելացի կենդանի մ'է։ Ան կ'առաջնորդէ ոչխարները արօտատեղին, եւ կը զգուշացնէ արտերու մէջ մտնելէ։ Գիշերը արթուն կը մնայ, թող չի տար որ գողերն ու գայլերը մօտենան հօտին։ Կը հաչէ, կը վազէ, ինչ կ'ընէ կ'ընէ՝ իր տէրը կ'արթնցնէ։ Չի վախնար։ Անոր կը վստահինք մեր տունն ու տեղը, մեր ագարակն ու կալուածները։*

**39.** Սահմ. եղանակով խոնարհեցէք (Ներկայ, Անկատար, Կատարեալ, Բացարձակ եւ Անկատար ապառնի ձեւերով):

*Դաս մը սորվիլ։ — Պատ ներկել։ — Վէգ խաղալ։*

**40.** Եզակի ըրէք սա խօսքերը.

*Այծերը կուտան կաթ։ Անոնց մազով կերպաս կը հիւսենք։ Այծերը ոչխարներէն աւելի արագաշարժ ու քիչ վախկոտ են: Սարերէն վեր կը մագլցին։ Ժայռին ծայրերէն կը ցատքեն։ Հեղեղատէն կը ցատկեն. կը խաղան, կը շարժին, մացառներէն կանաչ ծիլեր կը քաղեն ու կ'ուտեն։ Շատ քմահաճ ու խենթուկ շարժումներ կ'ընեն։ Անուշ նայուածք մ'ունին որ զիրենք կը սիրցնէ։*

**41.** Սա Բայերուն Հրամայական, Ստորադասական եւ Անորոշ եղանակները գտէք (բոլոր ժամանակներով).

*Հանդարտ երգել, խելօք նստիլ, բարձր պոռալ։ Դպրոց երթալ, նամակ ընդունիլ, պարապը մոռնալ։*

**42.** Գտէք 5 բարդ բառեր՝ *ա* Յօդակապով, 5 հատ՝ *ու* Յօդակապով, 5 հատ՝ *ե* Յօդակապով եւ 5 հատ՝ առանց Յօդակապի :

**43.** Սա բառերուն քով դրէք մէյմէկ Բացայայտիչ (Բ. Գրակ, էջ 68, Հրահ. 54).

1. *Ս. Գրիգոր։* — 2. *Արիստակէս։* — 3. *Պետրոս։* — 4. *Դաւիթ։* — 5. *Բեթղեհէմ։* — 6. *Յովհաննէս։* — 7. *Տէր Կարապետ։* — 8. *Աբգար։* — 9. *Լոնտոն։* — 10. *Մոսկուա։* — 11. *Ներսէս։* — 12. *Սանդուխտ։* — 13. *Եզր։* — 14. *Գրիգոր։*

**44.** Գոյականները Ածականի փոխեցէք, եւ Ածականները ալ Գոյականի : (61, Ը. 6) :

*Երկնային կապուտութիւն, ծովային խաղաղութիւն, հողային բարեբերութիւն, երկրային հարստութիւն, բոցեղէն փայլ, ցուրտ օդ, կենդանական ստինք, ատելի ցեղ, սիրելի ծնողք, աշակից ընկեր, մարդկային պարկեշտութիւն, զուարթ մանուկ, վրէժխնդիր ճիւաղ, գետային խորութիւն, կազմական կանոնագիր, ընտանեկան երջանկութիւն, բնական անհոգութիւն, պատկերոտ բնութիւն, ժամանակաւոր հեշտանք։*

## 13. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱԲԱՂ (Շար.)

### Դերբայ, Մակբայ, Նախադրութիւն

**Դերբայ** — *Երեք ընդունելութիւնները կը վերջաւորին ող, ած, լու կամ լիք։ Ասոնք էական բային հետ կը կազմեն բային Բաղադրեալ Ժամանակները։ Նաեւ իբրեւ Ածական ալ կը դրուին Գոյականներուն քով։*

*Գոյականի պէս ալ կը գործածուին եւ կ'ըլլան Տէրբայի, Սեռի խնդիր, Բնութեան խնդիր։*

**Ած եւ եր.** — Ած *վերջաւորողները ունին նաեւ* եր *ձեւ մը*։ *Տեսած*=*տեսեր*, *խօսած*=*խօսեր*, *թողած*=*թողեր*։

**Մակբայ.** — *Բային քով կը դրուին Մակբայները՝ որոշելու համար գործողութեան եղանակը, ժամանակը, տեղը, քանակութիւնը, եւայլն։*

*Գլխաւոր Մակբայներն են.*

1. Եղանակի. — *Աղէկ, գէշ, դիւրաւ, կամաւ, ակամայ, եւայլն։*
2. Ժամանակի. — *Հիմա, վաղը, երէկ, այսօր, երբ, երբեմն, ուշ, կանուխ։*
3. Տեղի. — *Հոս, հոն, հեռու, մօտ, ուր, ուրկէ։*
4. Քանակի. — *Բաւական, նաեւ, ա՛լ, այնչափ, շատ, քիչ, նուազ, առաւել, եւայլն։*
5. Հարցումի. — *Ինչո՞ւ, ի՞նչպէս, ո՞րչափ, ե՞րբ, ո՞ւր։*
6. Բացասումի. — *Ո՛չ, բնաւ, երբեք, մի՛, չ։*
7. Հաստատումի. — *Այո՛, անշո՛ւշտ, հարկաւ, եւայլն։*
8. Տարակուսական. — *Գուցէ, միթէ, արդեօք։*
9. Ցուցական. — *Ահա, ահաւասիկ։*

*Որակական ածականները երբ Բային քով դրուին, Մակբայ են։ Նոյնպէս Գոյականներուն Գործիական հոլովները։*

**Նախադրութիւն.** — *Նախադրութիւնը Գոյականին*

քով կը դրուի եւ յարաբերութիւն կամ կապ է Գոյականի մը եւ Բայի մը մէջտեղ։

Գլխաւոր Նախադրութիւններն են. Վերջը, առաջ, մէջ, դուրս, ետեւ, առջեւ, վրայ, տակ, քով, եւայլն։

Շատ մը Նախադրութիւններ բայի քով կը դրուին, Մակբայի պաշտօնով։

Զ, ի, յ, ց, առ, ընդ, ըստ բառերն ալ, որ Գոյականներուն սկիզբը կը դրուին, Նախդիր են։

## 14. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**45.** Սա Դերբայները իբրեւ Տէրբայի գործածեցէք մէյմէկ խօսքի մէջ.

*Առած, ունեցած, ուտելիքը, պառկողը։*

**46.** Հետեւեալ խօսքերուն մէջ Մակբայները ի՞նչ տեսակ են.

1. *Տղաքը Գաղղիերէն աղէկ կը խօսին։* — 2. *Հարկաւ պիտի խօսինք* — 3. *Ակամայ գործեցինք այս սխալը։* — 4. *Այսօր պիտի չգան եղեր։* — 5. *Երէկ օդը անձրեւոտ էր, նոյնինք վաղը պիտի բացուի։* — 6. *Հիմա կուգամ։* — 7. *Բաւական ուշացայ, այնպէս չէ։* — 8. *Թերեւս գայ։* — 9. *Անկեղծ եղէք ինծի հետ։* — 10. *Անուշ անուշ խօսինք։* — 11. *Բոլորովին կը մերժեմ։ Սուտ է։* — 12. *Այո կամ ոչ՝ պատասխան տուր։*

**47.** Սա Նախադրութիւններուն քով մէյմէկ Գոյական կամ Դերանուն խնդիր դրէք.

*Հետը, առաջ, ետեւ, քովը, վրան, դիմաց, մօտը, նկատմամբ։*

**48.** Շեղագիր բառերը ջնջելով՝ միւս բառերուն կցեցէք Ստացական մասնիկներ։ (Թ. Գրակ, էջ 69, Հրահ. 57)։

Օրինակ. — *Իմ գիրքս։ Գրեցէք = իմս։*

1. *Ցակոբին գիրքը։* — 2. *Մարիամին հայրը։* — 3. *Ծովին ջուրը։* — 4. *Մարդուն ցուպրակը։* — 5. *Ձիերուն խմելիքը։* — 6. *Որսորդներուն մախաղը։* — 7. *Քահանաներուն ողջոյնը։* 8. *Գեղին բնակիչներուն։* — 9. *Աչ կողմերնիդ։* — 10. *Միւս ընկերներով։* — 11. *Ետեւի ոտքին։* — 12. *Առջեւի կճղակներուն։* — 13. *Վերի վարձակալներէն։* — 14. *Դրսի հիւրերով։* — 15. *Վերջի առակներէն։* — 16. *Առտուան պատարագին։*

**49.** Որ Յարաբերական դերանունը Յոգնակի թիւով մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք վեց հոլովներով։

**50.** Յետոյ ըսէք թէ նոյն խօսքերուն մէջ Յարաբերական դերանունները ի՞նչ պաշտօն ունին (Տէրբայի՞ են, Յատկացուցի՞չ, Սեռի՞ թէ Բնութեան խնդիր):

**51.** Յետոյ նոյն վեց հոլովով Յարաբերական դերանունները եզակի ըրէք՝ իրենց վերաբերեալ մասերով:

---

## 15. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ (*Շար.*)

### Շաղկապ, Ձայնարկութիւն

**Շաղկապ.** — *Երկու բառ կամ երկու Նախադասութիւն իրարու կապելու համար կը դրուի Շաղկապը:*

*Գլխաւոր Շաղկապներն են. եւ, ու, վասնզի, ինչու որ, թէ, եթէ, թէպէտ, որովհետեւ, բայց, սակայն, իսկ, արդ, ուրեմն, կամ:*

*Ա՛լ բառը (շեշտով) Մակբայ է, եւ կը դրուի Բայի մը քով:*

*Ալ բառը (առանց շեշտի) Շաղկապ է, եւ երկու համեմատական բառերու քով կը դրուի կրկնուելով:*

*Որ Յարաբերական դերանուն է, եւ կը դրուի ուրիշ բառ մը չկրկնելու համար:*

*Որ Շաղկապ է, եւ կը դրուի Ստորադասական խօսքին սկիզբը:*

*Շաղկապներն այլեւայլ իմաստ կուտան.*

1. Ժամանակ *կը ցուցնեն՝ երբոր, մինչեւ որ, եւայլն:*
2. Պատճառ » *վասնզի, քանի որ, ինչու որ:*
3. Հակադրութիւն » *բայց, սակայն, այլ, իսկ:*
4. Բաղդատութիւն » *քան թէ, մանաւանդ թէ:*
5. Եղանակ » *ինչպէս որ:*
6. Թէութիւն » *թէ, եթէ, թէ որ, թէեւ:*
7. Քանակութիւն » *քան թէ, այնչափ որ, որչափ որ, եւայլն:*

**Ձայնարկութիւն.** — *Կիրք, յուզմունք, ուրախութիւն, ցաւ, զարմանք, եւայլն յայտնող բառն է Միջարկութիւնը՝ որ կը դրուի երկու ստորակէտի մէջ եւ խօսքին իմաստին հետ ուղղակի կապ չունի, բացէն հանուած ձայն մ'է:*

*Ձայնարկութիւն են. Ո՜հ, Է՜հ, բէ՜հ, բաբէ՜, աւա՜ղ, ափսո՜ս, մէ՜ղք, օ՜ն, ո՜վ, վա՜յ, կեցցէ՜, եւայլն:*

**Ծան.** — *Միջարկութիւններուն այլեւայլ տեսակները ճշդուած են Տարրական Քերականութեան մէջ (47 երես):*

**Խօսքին մասերը.** — *Գոյական, Ածական, Դերանուն, Բայ, Մակբայ, Նախադրութիւն, Շաղկապ, Ձայնարկութիւն խօսքին մասերն են. ասոնցմով կը կազմենք մեր խօսքը:*

*Ասոնցմէ՝ Գոյականը, Դերանունը, Բայը փոփոխական բառ են, ինչու որ իրենց ձայրը կը փոխուի:*

*Իսկ Ածական, Մակբայ, Նախադրութիւն, Շաղկապ եւ Ձայնարկութիւն անփոփոխ բառեր են:*

---

## 16. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**52.** Շաղկապները ստորագծեցէք.

*1. Աշխատութիւնը սիրեցէք, տղամք, ինչու որ ան կը բերէ ձեզի երջանկութիւն. — 2. Կամ պիտի սորվիս, կամ պիտի պատժուիս. — 3. Էջն ու ջորին ազգական են իրարու. — 4. Անձրեւանոցդ բաց, երբոր անձրեւ տեղայ. — 5. Ձեմ ուզեր, քանի որ կը վարանիս. — 6. Ո՞ւր կ'ուզես որ երթամ, ըսէ՝ կամ թող տուր որ նստիմ. — 7. Առաջին պիտի ելլէ, եթէ շարունակէ աշխատիլ. — Գիր ալ գրեցի, գրօսանք ալ ըրի.*

**53.** Ձայնարկութիւնները ստորագծեցէք.

*1. Աւա՜ղ, հիւանդ եմ. — 2. Ա՜հ, մի խնդաք. — 3. Եղո՜ւկ, իմ թռչունս է եղեր. — 4. Օ՜ն, շուտ քալէ. — 5. Ո՛վ մարդ, պիտի մեռնիս վերջապէս. — 6. Է՜հ, դուն ալ պիտի ծերանաս.*

**54.** Սա Բայերուն ներհակը գտէք, (Տես Ձ. Գրակ, էջ 64, Հր. 42);

**Մօտենալ, սփռել, վառիլ, աւելցնել, քակել, աւրել, ուշանալ, հե-**

*տեւիլ, մաքրել, լռել, ծնիլ, կապել, իջնել, Թողնել, ատել, վարձատրել, ցրուել, ուրախանալ, պզտիկնալ, յայտնել, Նիհարնալ (կամ վատիլ), օրհնել, շինել, գնել, տխրիլ, լալ, յիշել, հանդարտիլ, արգիլել, հրամայել, գտնել, հանգչիլ, առողջանալ, քաղել, գոցել, գանձել, արթննալ։*

**55.** Սա Բայերով մէյմէկ խօսք շինեցէք, (Թ. Գրկ, էջ 73, Հր. 69)։

1. *Եմ։* — 2. *Իջէք։* — 3. *Ենք։* — 4. *Կը մաղթեմ։* — 5. *Ենք։* — 6. *Եկէք։* — 7. *Կը գործածուին։* — 8. *Կ'երթանք, կը հագնինք, կ'ընենք։* — 9. *Կը պտտին։* — 10. *Յոգնեցանք։*

**56.** Թ. Գրակ, էջ 60, Հրահ. 28 ի Բայերը երեք սիւնակի մէջ գրեցէք՝ որոշելով երեք Լծորդութիւնները։

**57.** Հարցումներուն պատասխանեցէք.

1. *Ո՞ր կենդանիներ կաթ կուտան։* — 2. *Ո՞ր կենդանիներ բուրդ կուտան։* — 3. *Ո՞ր կենդանիներ մարդուս վնասակար են։* — 4. *Ո՞ր կենդանիներ բոյսերուն կը վնասեն։* — 5. *Ի՞նչ կ'ընեն կենդանիներուն եղջիւրն ու կճղակը։* — 6. *Ո՞ր կենդանին կուտայ փղոսկրը։* — 7. *Ի՞նչ կուտայ կէտ ձուկը։* — 8. *Ի՞նչ կուտայ մորիւ կոչուած ձուկը։* — 9. *Ի՞նչ օգուտ ունի մորիւ ձուկին եղը։* — 10. *Ի՞նչ օգուտ ունին Թռչուններուն փետուրները։*



## 17. ԴԱՍ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԱՔԱՂ (*Շար.*)

### Կէտադրութեան նշաններ, Առոգանութեան նշաններ

**Կէտադրութեան նշաններն են.**

Բութ (՝) *կը դրուի զեղչուած բառի մը տեղ։*

Ստորակէտ (,) *կը դրուի համառօտ բառերու մէջ։*

Կէտ (.) *կը դրուի լրացած խօսքերու մէջ։*

Վերջակէտ (։) *կը դրուի խօսքը աւարտած տեղը։*

**Առոգանութեան նշաններն են.**

Շեշտ (՛) *կը դրուի ուժով հնչուելիք վանկին վրայ։*

Ապաթարց (') *կը դրուի կրճատուած ձայնաւորին տեղ։*

Գիծ (—) *կը դրուի հարց-պատասխանի առեն։*

Պարոյկ (՞) *կը դրուի հարցական բառերուն վրայ։*

Երկար (՛) *կը դրուի ձայնարկութիւններու վրայ։*

Ենթամնայ (‿) *կը դրուի տողին ծայրը կէս մնացած բառին տակը։*

Չակերտ («  ») *կը դրուի ուրիշին խօսքը զատելու համար։*

Փակագիծ ( ) *կը դրուի միջանկեալ խօսք մը զատելու համար։*

Կախման կէտ ... *կը դրուի Թերի խօսքէ մը ետքը։*

## 18. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**58.** Սա խօսքերը գրեցէք՝ Կէտադրութեան եւ առոգանութեան նշանները դնելով·

1. *Ծովին ջուրն աղի է իսկ անձրեւինը անուշ — 2. Եղբօրանիս յասմիկը շուշանը ծաղիկ են — 3. Երգը կը սիրեմ գեղեցիկ բնութեան վրայ կը հիանամ ասոնք եղան իր վերջին խօսքերը — 4. Ալ հերիք է տղայ գլուխս կը ցաւի — 5. Ձին կուտէ բայց չի խօսիր չ՚երգեր — 6. Աղէկ կ՚ըլլայ ոչ ուրեմն մի դպչիր — 7. Որու համար կը բանիս աս ծաղիկը — 8. Կեցցես Մարի շատ սիրուն նուէր մ՚է ինծի տուածդ — 9. Յիսուս ըսաւ Թող տուէք որ իմ քովս գան աս տղաքը — 10. Հռիփսիմէ այս էր սրբուհիին անունը բարեպաշտ կոյս մ՚էր որ նահատակուեցաւ — 11. Թող զիս Թող ապա Թէ ոչ*

**59.** Սա խօսքերը ժխտական ըրէք, ապա Ներբայներ եւ Լրացուցիչներ կցելով՝ ընդլայնեցէք·

*Կերէք, կը դնեմ, կը զարնէ, բրի, ըրիր, կ՚ըսեմ, լաց, կը բանայ, կուտան, պիտի դառնանք, դարձէք, կ՚իյնայ, պիտի ուտէ, գնա, գացինք։*

**60.** Շեղագիր Գոյականներն անփոփոխ պահելով՝ անոնց քով դրէք ուրիշ Դերբայներ, (Թ. Գրակ, էջ 72, Հրահ. 66) :

Օրինակ· — *Շարժող մարմին։ — Անցած դէմք, եւայլն։*

*Նեխուած մարմին։ — Փայլող դէմք։ — Պատռած շապիկ։ — Տեսնելիք երկիր։ — Գծգալու վարմունք։ — Լուսաւորուած դահլիճ։ — Ընդունուած նուէր։ — Գոռացող հիւանդ։ — Մշակուած արտ։ — Զարդարուած փողոց։ — Ջեռուած կտաւ։ — Վարձուած կառք։ — Քալող կենդանին։ — Բարկացող ծերունին։ — Մեռած գործաւոր։*

**61.** Հետեւեալ Ձայնարկութիւնները մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք (Ը. Գրակ, էջ 80, Հրահ. 65) :

*Երանի՜։ Մե՜ղք։ Ափսո՜ս։ Օ՜հ։ Աւա՜ղ։ Ա՜յ։ Ա՜հ։ Կեցցէ՜։ Անէ՜ծք։ Վա՜յ։*

**62.** Հարցումներուն պատասխանելով՝ ըսէք թէ ի՞նչ տեսակ Ձայնարկութիւն կը գործածենք·

1. *Երբ բանի մը փափաքինք։ 2. Երբ բանի մը վրայ ցաւինք։ 3. Երբ բանի մը վրայ զզուանք։ 4. Երբ բանի մը վրայ զարմանանք։ 5. Երբ բանի մը վրայ ուրախանանք։ 6. Երբ մէկուն համար զգուանք յայտնենք։ 7. Երբ մէկուն բարկանանք։ 8. Երբ վախ զգանք։*

## 19. ԴԱՍ. — ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

### ՋԱՆԱՍԷՐ ԱՇԱԿԵՐՏԸ

*Ամէն մարդ կը սիրէ բարի աշակերտը որ միշտ իր գործին կը պարապի, ուշադիր է եւ ջանասէր։ Իր ժամերը շուտ կը սահին, ինչու որ լաւ անցուած ժամանակը կարճ կը թուի։ Ուսումը կը զբօսցնէ զինք, ընթերցումը հանգստութիւն կուտայ, աշխատանքը հաճոյք կ'առթէ անոր։ Ամէն բան դիւրին կուգայ անոր եւ ամէնէն դժուար բաներու մէջ ալ կը յաջողի։ Այդ պատճառով, ընկերներն ալ զինք կը սիրեն, ուսուցիչը կը վարձատրէ։ Մայրը, որ երջանիկ է անոր բարեյօժարութեան համար, գովեստ կ'ուղղէ անոր։ Ապագային, համեստ գիտնական մը պիտի ըլլայ, ինչու որ համեստութիւնը սովորական ընկերն է հմտութեան, կամ՝ իմաստունին ըսածին պէս՝ «Համեստութիւնը եւ տաղանդը միշտ միասին կ'ընթանան»։ Այսպիսի աշակերտի մը վիճակին կը նախանձիմ. եւ ո՞վ արդեօք չպիտի նախանձի, երբ նկատէ թէ լաւ դաստիարակութիւնը առաքինութեան աղբիւրը եւ բոլոր բարիքներու սկզբնապատճառն է։*

**63.** Վերի հատուածը վերլուծեցէք՝ ցոյց տալով բառերուն տեսակն ու կրած փոփոխութիւնները։ Յետոյ որոշեցէք նախադասութեանց էական մասերն ու բառերուն պաշտօնը։

## 20. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

**64.** Խօսքերն ամբողջացուցէք.

*1. Վոսփորի նեղուցը կը միացնէ... եւ... ծովերը։ — 2. Սէլանիկի ծոցը կը գտնուի ... ծովուն մէջ։ — 3. ... կղզին կը գտնուի Միջերկրական ծովուն մէջ։ — 4. Պալքան լեռները կը գտնուին... (ո՞ր երկրի մէջ)։ — 5. Պալքանեան լեռնաշղթան ունի... ճիւղ։ — 6. Իզմիրի ծովածոցը կը գտնուի ... (ո՞ր ծովուն մէջ)։ — 7. Ատալիայի եւ Իսքէնտէրունի ծոցերը կը գտնուին... (ո՞ր ծովու մէջ)։ — 8. Նիկոմիդիոյ ծոցը կը գտնուի ... (ո՞ր ծովու մէջ)։ — 9. Ասիական Թուրքիոյ Կուսակալութիւններն են. ...։*

**65.** Հետեւեալ շաղկապները մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք, (Ը. Դրակ, էջ 79, Հրահ. 61)։

*Եթէ, ու, քանի որ, եւ, երբոր, ինչու որ, որովհետեւ, մանաւանդ, որպէսզի, քան թէ։*

**66.** Ը. Դրակ, էջ 76, Հրահ. 53ի Ներգործական բայերը Անցեալ կատարեալ եղակի Ա. Դէմքով գրեցէք՝ քովը դնելով *եւ* Դերբայինը։

**67.** Նոյն Բայերը Անցեալ կատարեալ եղակի Գ. Դէմքով գրեցէք՝ իմաստին յարմար Դերբայիներ կցելով։

**68.** Նոյն Բայերը Անցեալ անկատար եղակի Գ. Դէմքով գրեցէք եւ Դերբայիներ կցելէ ետք, մէյմէկ Սեռի խնդիր դրէք։

**69.** Ը. Դրակ, էջ 77, Հրահ. 57ը նորէն գրեցէք Բացայայտիչները ջնջելով։

**70.** Սա զոյգ բառերը (Ը. Դրակ, էջ 78, Հրահ. 59) մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք.

1. *Աթոռին ներքեւ, հայլիին դիմաց, դուռին առջեւ, պատին ետեւ, ծառին վրայ, սնտուկին մէջ, հողին տակ։* — 2. *Հիւանդին համար, ջորեպանին հետ. հովին դէմ, ընկոյզի չափ, գետին մօտ, կովու պէս։* — 3. *Ջուրէն զատ, մեռնելէն ի վեր, քաղաքէն դուրս։* — 4. *Մինչեւ ծովեզերք, դէպի անտառ։*

**71.** Հետեւեալ Հրահանգին մէջ շեղագիր բառերը ի՞նչ մաս բանի են եւ ի՞նչ հոլով։

1. *Աղուէսը կամաց կամաց կը փորձէր կերակուր եփելու։* — 2. *Պարտէզը ջրելու կ՚երթամ։* — *Աղքատին հագուստ պէտք է. մեռնողին պատանք։* — 4. *Ջրին բերածը քամին կը տանի։* — 5. *Խօսելիքս [illegible] միտքդ պահէ։* — 6. *Աստուծոյ պարգեւածով գոհ ըլլալու ենք։* — 7. *Ես լսածս կը պատմեմ։* — 8. *Լողալ գիտցողները խեղդուելէ ազատեցան։*

**72.** Անորոշ եղանակի Բայերուն գործածութիւնը ցոյց տուող վերի օրինակներուն պէս խօսքեր շինեցէք։

**73.** Ըսէ՛ք՝ Առոգանութեան ո՞ր նշանները պէտք է դնել.

1. *Բառի մը մէկ վանկը ուժով կարդալու համար։* — 2. *Կրճատուած ձայնաւորի մը տեղ։* — 3. *Հարց-պատասխանէ առաջ։* — 4. *Հարցական բառերու վրայ։* — 5. *Կիրք յայտնող բառերու վրայ։* — 6. *Տողին ծայրը կիսատ մնացած վանկին տակը։* — 7. *Ուրիշի մը խօսքը առաջ բերուած ատեն։* — 8. *Իբրեւ մեկնութիւն դրուած խօսքերուն սկիզբն ու վերջը։* — 9. *Դիտմամբ թերի ձգուած խօսքէ մը ետքը։* — 10. *Բառի մը մէկ քանի գիրերուն վրայ, իբրեւ համառօտութեան նշան։*

## ՎԵՐՋ Ժ. ԴՐԱԿԻ